ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 12 1977

Բ. Լ. ՉՈՒԳԱՍԶՅԱՆ

# ՀԱՅԵՐԵՆ ՁԵՌԱԳՐԵՐ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒՄ

1971—72 թթ. ձմռան ամիսներին մասնավոր այցով գտնվելով Ամերիկայի Միացյալ Նահանգներում, հնարավորություն ունեցանք ծանոթանալու տարբեր քաղաքների թանգարաններում ու գրադարաններում, ինչպես նաև առանձին անհատների մոտ պահվող հայկական ձեռագրերի։ Որոշ անձինք, մեր խնդրանքով, իրենց պատկանող ձեռագրերը նվիրաբերեցին Մաշտոցի անվան Մատենադարանին, որտեղ հազարավոր այլ ձեռագրերի հետ դրանք հավերժ կպահվեն իրենց նվիրատուների անուններով։ Եղան և այնպիսիք, որոնք սիրահոժար թույլատրեցին նկարագրել իրենց մատյանները և ընդօրինակել դրանց հիշատակարանները։

Միացյալ Նահանգների գրադարանների հայկական ձեռագրերի փոքրիկ հավաքածուների մանրամասն նկարագրությունը պատրաստել է Կալիֆորնիայի համալսարանի Մերձավոր Արևելքի բաժնի վարիչ պրոֆ. Ավետիս Սանջյանը, որը բարյացակամորեն մեզ տրամադրեց իր նկարագրած 160 ձեռագրերի ցանկը։ Սրանից դուրս Կոնգրեսի գրադարանում (Վաշինգտոն) և Ս. Երրորդություն հայկական եկեղեցում (Ֆրեզնո) ծանոթացանք մինչ այդ ոչ մի հայագետի կողմից չնկարագրված մի քանի հայերեն ձեռագրերի, որոնք անգամ ցուցագրված ու համարակալված չէին, ուստի նպատակահարմար գտանք դրանք ևս նկարագրել և մյուս մատյանների նկարագրության հետ մեկտեղ հրապարակել։ Ֆրեզնոյի ձեռագրերը մեզ հայտնի դարձան այդ քաղաքից մեկնելուց մի քանի ժամ առաջ, ուստի միայն կարողացանք դրանց հիշատակարանների լուսապատճենները վերցնել։

Նկատի ունենալով, որ այս ձեռագրերի նկարագրությունը, մեր տրամադրության տակ եղած ժամանակի սղության պատճառով, կատարում էինք չափազանց շտապ, հնարավոր է, որ լինեն որոշ վրիպումներ, որոնց համար խնդրում ենք ներողամիտ լինել։

ԱՄՆ-ում կատարած մեր աշխատանքների մասին 1972—74 թթ. մի քանի հոդվածներ ենք տպագրել մեր հանրապետության թերթերում ու հանդեսներում, որտեղ գնահատանքի խոսք ենք ասել մեր միջոցով ձեռագրեր և թանգարանային այլ արժեքներ հայրենիքին նվիրաբերողների հասցեին. օգտվելով այս պատեհությունից մեկ անգամ ևս մեր խորին շնորհակալությունն ենք հայտնում բոլոր նրանց, ովքեր սիրահոժար մեզ օգնեցին հայտնաբերելու հայկական ձեռագրերի նոր հասցեներ, ինչպես նաև նրանց, ովքեր հայրենասիրաբար իրենց մատյանները նվիրաբերեցին Մատենադարանին։

ԱՄՆ կատարած մեր շրջագայությունը ցույց տվեց, որ դեռևս գիտությանն անծանոթ հայկական շատ ձեռագրեր կան՝ ցրված աշխարհով մեկ, ուս-

տի անհրաժեշտ է դրանք հայտնաբերելու նպատակով ծրագրված աշխատանք կատարել:

## 1

### ԱՒԵՏԱՐԱՆ

*(Լոս Անջելոս, Արշակ Տիգրանյան, № 2)*

Կիլիկիա — Ծիծեռնոյն ՉԺԹ — 1270

Գրիչ՝ *Բարսեղ*: Ստացող՝ *Հովհաննես*: Թերթ՝ *328*: Նյութ՝ *մագաղաթ*: Մեծություն՝ *12,8×17,8*: Գրություն՝ *երկսյուն*: Գիր՝ *բոլորգիր*: Տող՝ *19*: Մանրանկարչություն՝ *խորան 8 (Եւսեբիոսի թղթով և համաբարբառ կանոններով)*: *Մատթեոս՝ 10բ, Մարկոս 99բ, Ղուկաս՝ 159բ, Հովհաննես՝ 252բ*: *Կիսախորան՝ 11ա, 100ա, 160ա, 253ա*: *Լուսանցազարդ՝ բուսական*: *Զարդագիր՝ թռչնագիր*: Կազմ՝ *կաշեպատ տախտակ դրոշմազարդ*: Վինակ՝ *բավարար*:

#### Հիշատակարան

##### Գրչի

*251բ. Ով հրաշափառ և երջանիկ երկնաւոր հրեղէն դասուն... Հեզ յիս՝ յանարժան ծառայս քո ի Յովհաննէս և ի մեղուցեալ գծողս Բարսեղ, զգթութեան վասկս և մի՛ տար, Տէ՛ր, դատ ընդ ծառայիցս քո, որ ոչ արդարանամք, այլ մաղթանաւք մաւր քո, Քրիստոս, զմեղաց լուծն մեր խորտակեա՛ և քաւեա՛, և քեզ փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն, ամէն:*

*Ո՛վ ամենաերջանիկ և դասք սրբազան քահանայից, որք հանդիպիք սուսուածային սուրբ Աւետարանիս, յիշեսջիք [ի] Տէր զարքայն Հայոց զԼեւոն և զբարեպաշտ թագուհին իւր զԿեռան և զորդին իւրեանց Կոստանդին՝ զբարի շառաւիղն ի բարի արմատոյ, որոյ Տէր Աստուած տացէ ժամանակս երկայնս և խաղաղականս և զաւրացուցէ ի վերայ թշնամեաց խաչին Քրիստոսի և պարադայից ամաւք շնորհեսցէ մեզ ընդ երկայն աւուրս. ամէն, ամէն: Եւ որ զմեզ յիշէա աղաւթիւք, և՛ նա եղիցի յիշեալ:*

*323բ. Ի յեթն հարիւրորդի տասներորդի իններորդի (1270) թուաբերութեան տումարի Հայոց, յառաջնորդութեան և գիտապետութեան անբիծ հեզինակին և յաջորդութիւն Աթոռոյ սրբոյն Գրիգորի՝ Տեառն Յակոբայ և ի թագաւորութեան* Կիլիկեցւոց *նահանգիս* Հեթմոյ *բարեպաշտի, և ի պարոնութեանն Հայոց* Լեւոնի՝ *որդւոյ* Հեթմոյ *արքայի, զոր Տէր Աստուած տացէ սոցա ժամանակ խաղաղութեամբ երկայն ամաւք, և յետ յայսմ աշխարհ և ի հանդերձեալ կեանքն զանսպառ բարիսն պարգևեսցէ: Նաև երջանիկ ամենաւրհնեալ ամուսնոյն* Լեւոնի՝ Կիր Աննայի *և դեռաբոյս մանկան նոցա* Հեթմոյ *տացէ Յիսուս Քրիստոս հոգի հեզութեան և իմաստութեան և երկիւղ աստուածպաշտութեան և բազում ժամանակ խաղաղութեան և հանգիստ յաւիտենական ի յանվախճան կեանսն: ‖ (324ա) Վասն որոյ աղաչեմ զամենեսեան առ հասարակ, ես նուաստս* Յոհաննէս, *յետինս յորդիս եկեղեցւոյ, որ ցանկացող եղայ այսմ լուսոյեղձ և կենսակիր, քառաչահեան, մշտալոյս բանից Տեառն մերոյ Յի-*

*սուսի Քրիստոսի աւետեաց Աւետարանիս, և ստացա զսա բազում աշխատութեամբ ի լուսաւորութիւն մանկանց նորածնելոց Նոր Սիոնի և ի պայծառութիւն սրբոյ եկեղեցւոյ, ի բժշկութիւն հիւանդաց և ի վանում այսոց չարաց, ի պարծանըս քրիստոնէից և փառըս Քրիստոսի Աստծոյ մերոյ, ի յիշատակ հոգւոց մերոց և ծնաւղաց և բնաւ զարմից և կենդանեաց և մեռելոց սորա, որ ստա[ցաւ] ի յարդար վաստակոց իւրոց՝ ի վայելումն անձին իւրոյ և* Թորոսի *հանգուցելոյն ի Քրիստոս և յիշատակ* Գրիգորի *քահանայի և կենակիցն իւրոյ* Հռիփսիմէ*, և *ամենայն հաւատացելոց ննջեցելոց:*

*Արդ, ո՛վ սուրբ ճգնազգեաց կրաւ||(324բ)նաւորք և առաքելազումար դասք քահանայից, յորժամ վայելէք ի քաղցրաճաշակ, եղեմատունկ, աստուածատոյց վտակաց աստուածային աւետարանական բանից, յիշեսջիք առաջի զենլոյն Քրիստոսի զստացող սորին* զՅովհաննէս՝ *ողորմութիւն գտանել յահեղ աւուրն ի մեծի ծագմանն յանբերկ տեառն, մանաւանդ զգծող սորին՝* զԲասիլ *քահանայ, որ ի բազում աղաչանաց յանձն էառ զգծել սորին բազում աշխատութեամբ և ակար մարմնով յանխափան նաւահանգիստ՝ այսր և անդր շրջելով յայլս և ի ծերպս, զոր իմաստուն ընթերցողքդ և հմտականմտաւորքդ ճանաչէք զարուեստ և զիմաստութիւն, որ ի սմա գանձեալ կայ, վասն որոյ աղաչեմ զամենեսեան՝ ընդ ստացողիս և զգրիչ յիշեսջիք ի* Տէր, *ողորմութիւն գտանել ի Քրիստոսէ: Եւ ||(325ա) նոյն ինքն հասարակաց պարգևատուն՝ ամենեցուն ողորմեսցի՝ ստացողիս և գրչին և այսմ յիշատակարանի գրողիս ի վայելողացդ. ամէն:*

*Արդ, գրեցաւ սա ի* Լեռանս Կարմիր, *մերձ յանառիկ զղեակն* Բարձրբերդ, *ի վանքս* Կիռնկա, *ընդ հովանեաւ* Սուրբ Աստուածածնին *և* Սուրբ Նշանին, *և աւարտումն սորա՝ ի յանապատս* Միծռնբոյն *եղև*... ||:

*326բ. Յերեսս անկեալ աղաչեմ զամենեսեան, որք պատահիք սմին, յիշեցէք ի սրբամաքուր աղաւթս ձեր զերիցս երանեալ ծերունի պատուական քահանայն* Յոհաննէս Գոմձգերցի, *որ զաւրինակն շնորհեաց, նաև զգրող աւրինակին* զՂուկասակէս, *և* Տէրն *փառաց ամենեցուն ձեզ և մեզ ողորմեսցի առհասարակ ի յահեղ հրապարակին, ուր գործք թագաւորեն և սատանայ ամաւթ լինի:*

Հետագայի

ա. *327ա. Նաև զպատճառ եղեալ կազմութեան սորա զքեռ թագաւորին* Հայոց Հեթմոյ *և զորդի աստուածասիրի և բարէպաշտի* Կոստանդեա *թագաւորահայրն* զՀռեփսիմէ *կրաւնաւորն յիշման արժանի արասջիք, և զկազմող սորա* զԳրիգոր *փակակալ և զեղբայր նորին* զՍտեփանոս *վանական քահանայ:*

բ. *327ա. Զվերջատին նորոգող սուրբ Աւետարանիս զպատուական քահանայն* զՏէր Մարտիրոսն *յիշեցէք ի Քրիստոս, ո՛վ մանկունք սուրբ եկեղեցւոյ և դասք լուսերամից, զի ետ նորոգել և կազմել զսուրբ Աւետարանս՝ յիշատակ հոգւոյ իւրոյ և ծնաւղացն իւր՝* Զախին *և իւր որդոյն՝* Յառաշատին *և իւր կողակցին, և մաւրն իւրոյ՝* Մարիամին, *և եղբաւրն իւր՝* Գոհիմին, *և ամենայն արեան մերձաւորս ||(327բ)ցն իւր՝ հնոցն և նորոցն, կենդանեաց և հանգու-*

* *Ցրիվ հատվածը գրված է այլ ձեռագրով քերված տողի վրա*

ցելոցն, և որ յիշէ և յիշման արժան առնէ՝ յիշեալ լինի ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ իւր միւսանգամ գալստեանն. ամէն:

Դարձեալ կրկին անգամ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՏէր Մարտիրոսն և զկողակիցն իւր և ծնաւղսն իւր և լի բերանով Աստուածողորմի ասացէք, և Աստուած ձեզ ողորմեսցի. ամէն:

Եւ դարձեալ յիշեցէք ի յերկնայթռիչ աղաւթս ձեր զկազմող սուրբ Աւետարանիս՝ զԿոզլոյ սուտանուն սարկաւագս, որ տառապեալ եմ և կորեալ և յոյժ կոխան եղեալ փորձողին, բայց յոյս զՔրիստոս ունիմ և զՏիրամայր սուրբ Աստուածածինն: Կազմեցօ սուրբ Աւետարանս ի թվին ՌԺԷ (1568). ամէն, ամէն:

գ. 1ա. Ծառայ Տեառն՝ մեղսալի Տէր Մովսէս քահանայս թ[ւ]ոյս ՌՄՀ (1821) ամի սեպտեմբերի ժե (15) եկի Մերաին, օթէվանս մեր եղև Ամբէցի Ղազանճի Վարա[.]եան պարոն Մելքոնին, զոր և խնդրեմ ի Տեառն[է]տացէ կեանս երկարս, շէն և պայծառ պահեսցէ. ամէն:

գ. 1ա. Թուին ՌՄՀԴ (1824) փետրվարին եկի Մերաին Ղազանճի պարոն Մելքոնին տուն, ես՝ Սուրբ Դանեալայ բնակաւոր Մելքիսէք վարդապետս, և վասն իմ մեղացս քաղաքն մահտարայ եղաւ (չրջապատվեց), մնացի. Տէր Աստուած այց արասցէ. ամէն:

ե. 328ա. Պատճառ գրոյս այս է, որ ես մեղապարտ Տէր Կարապետ եկի ի սուրբ Երուսաղեմայ նուիրակութիւն ի թուին ՌՄՀԴ (1824), ես ///:

գ. 3ա. (Գրչափորձ) Հասցէ գիրս Տիարպաքիր Հասանփաշի խանն Չալապիզատա մահտեսի խօճայ պարոն Յակոբին ձեռն ի բարին. ամէն (նույնը՝ 9ա):

է. 189ա. 1867 հոկտեմբեր ամսոյ գնեցի զԱւետարանս ի Տիգրանակերտ, յորժամ յուղի էաք գնալ ի Սղերդ՝ ձեռնադրելոյ հովիւ նոցա զԱլիաս Նիկոմեացին:

Ս. Պաւքեան Սիմէօն հովիւ աւետարանական հայոց ի Բաղէշ: Ես ծնընդեամբ Սասունցի Փընկոյի տունէն, Չիբենաց գիւղէն:

2

## ԱՒԵՏԱՐԱՆ

(Նյու-Յորք, Հ. Փ. Քրաուզ)

ԺԴ—XIII

Գրիչ Վարդերի ընդօրինակած երկաթագիր մեծադիր թղթյա այս մատյանը հնագետ ու պատմաբան, Թուրքիայում Ֆրանսիայի նախկին դեսպան Ժան Դոգիի մոտ տեսել և նկարագրել է Արտ. արք. Սյուրմեյանը (տե՛ս «Մայր ցուցակ հայերեն ձեռագրաց Եվրոպայի մասնավոր հավաքումներու», Ա, 1950, էջ 5—8): Ժ. Դոգին մատյանս գնել է 1936 թ. Կ. Պոլսում Ալեքսանդր անունով մեկից:

1971 թ. ապրիլի 30-ին Ժ. Դոգիի ձեռագրերն ու այլ հնություններ աճուրդի հանվեցին Փարիզում, որտեղ և այս ավետարանը ձեռք բերեց նյույորքաբնակ գրավաճառ Հ. Փ. Քրաուզը (16 East 46th st., New York):

Պրն. Հ. Քրաուզը հոժարակամ մեզ ծանոթացրեց ձեռագրին և մեր խնդրանքով տրամադրեց մանրանկարների սլայդները:

### 3

### ՄԱՍՆ ՂՈՒԿԱՍՈՒ ԱՒԵՏԱՐԱՆԻ

*(Նյու-Յորք, Ժյուլյեն Հովսեփյան)*

ԺԳ—ԺԳ—XIII—XIV

Թերթ՝ *1*։ Նյութ՝ *թուղթ*։ Մեծություն՝ *12×9,5*։ Գրություն՝ *միասյուն*։ Գիր՝ *բոլորգիր*։ Մանրանկարչություն — *Մկրտություն (պահպանված են Հիսուսի և Հովհաննես Մկրտչի գլուխները)*։ Վիճակ՝ *եզրերը պատռված, մանրանկարը գունաթափ*։

Ծնր. *Այս պատառիկը 1972 թ. փետրվարի 11-ին Նյու-Յորքում տողերիս գրողի միջոցով Ժ. Հովսեփյանը նվիրել է Մաշտոցի անվան Մատենադարանին (Պատառիկ № 1913)*։

### 4

### ԱՒԵՏԱՐԱՆ

*(Սան Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 5)*

Եղեգիս ՉԾԵ—1306

Գրիչ և ծաղկող՝ *Սարգիս կր.*։ Ստացող՝ *Դանիել*։ Թերթ՝ *453*։ Նյութ՝ *թուղթ*։ Մեծություն՝ *24×31,5*։ Գրություն՝ *երկսյուն*։ Գիր՝ *բոլորգիր*։ Տող՝ *15*։ Մանրանկարչություն—*Խորան (համաբարբառով՝ կանոն Բ, Է-Ը)՝ 137բ, 140բ, Հարություն Ղազարու՝ 138ա, Հարություն Քրիստոսի՝ 351ա, քայքայված տարբեր մանրանկարների մասերից կազմված մի թերթ՝ 139բ, Իջեցումն խաչից և Հովհաննես ավետարանիչ (երկու նկարների տարբեր մասերը իրար են միացված)՝ 352բ, ինքնատիպ լուսանցազարդեր, յուրաքանչյուր ավետարանի զարդագրերը արված են տվյալ ավետարանիչի խորհրդանշանով*։ Վիճակ՝ *վատ, թանաքակեր*։

Ծնր. *Ավետարանից պակասում են բազմաթիվ թերթեր, կազմ և պահպանակներ չունի, թերթահան է։ Սքանչելի մանրանկարները վնասված են։*

*Ե. Լալայանը այս ձեռագրի մասին խոսում է իր «Նախիջևանի գավառ» ուսումնասիրության մեջ (տե՛ս «Ազգագրական հանդես», գիրք XII, 1905, էջ 171) և բերում է գրչի հիշատակարանի մի փոքրիկ հատվածը, որը և վերահրատարակված է պրոֆ. Լ. Խաչիկյանի «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններում», Երևան, 1950, էջ 42։*

*Այս Ավետարանը Ե. Լալայանը տեսել է Վերին Ագուլիսի Ս. Հովհաննու Մկրտչի եկեղեցում, սակայն թյուրիմացաբար նշել է որպես մագաղաթյա ձեռագիր։ Լալայանը գրում է, որ ձեռագիրը ավետարանիչների պատկերներ ունի, մինչդեռ ներկայումս միայն Հովհաննես ավետարանիչի պատկերի մի մասն է պահպանվել։*

*Ինչպես տեղեկանում ենք ձեռագրի վերջին կցված հիշատակագրություններից (453ա և 459բ), Ագուլիսի դեպքերից (1918 թ.) հետո այն տարվել է*

Թավրիզ և վաճառվել: Հավանաբար հենց այդ ժամանակ էլ Ավետարանը կազմահան է արվել և մեծարվեստ մանրանկարները բարբարոսաբար պատառոտվել են:

Ձեռագրի մի քանի էջերի վրա դրված գրաքննչական պարսկերեն կնքադրոշմը (ت.ب. مراجعه و تفتيش شد. سنه ١٣١٠-թր) (Թավրիզ), ստուգվեց և քննվեց, 1310=1931 թ.) ենթադրել է տալիս, որ 1931 թ. իրավունք է ձեռք բերվել Ավետարանը Իրանից դուրս տանելու համար:

40-ական թվականներին ձեռագիրը գտնվել է նյույորքաբնակ գորգավաճառ և հնահավաք Գարուշյանի մոտ, որից և ձեռք է բերել Ն. Մարտիկյանը:

1972 թ. հունվարին Սան-Ֆրանցիսկոյում տողերիս գրողը այս ձեռագիրը նվեր ստացավ Մաշտոցի անվան Մատենադարանի համար (№ 10525):

## Հիշատակարան

### Գրչի

450ա, Աստուածապետականին բոլոր խնքնութիւնքն ի վեր ... || ... (450բ) ...Արդ, այսմ աստուածունակ և քրիստոսազարդ սուրբ Աւետարանիս փափաքելի տենչմամբ ցանկացեալ աստուածասէր և ցանկալի այրս Դանիէլ և ի թուականութեան Հայոց ՉԾԵ (1306) ետ գրել զսա և ծաղկեալ ոսկեզարդ տնաւրինականաւք ի ձեռն իմոյ մեղսամերկ և անպիտան կրաւնաւորի՝ Սարգսի, ի մայրաքաղաքս Եղէգիս, ընդ հովանեաւ երից տաղաւարացս՝ Սուրբ Կաթողիկէիս և Սուրբ Աստուածածնիս և Սուրբ Նախավկայիս, ի յաշխարհակալութեան ղան Խարպանտին, զոր ազգն Իսմայէլի սուլտան անուանեն, ի թագաւորութեան Հա[յ]ոց Հեթմո[յ], և յիշխանութեան այսմ նահանգի իշխանաց իշխանի բարեպաշտ և ամենաւրհնե[ա]լին Բուրթէլին և Բուղտաին՝ որդոց քրիստոսասէր և փառազարդ իշխանաց իշխանի Էլիկումին՝ որդո[յ] մեծին Տարսաիճին զոր Տէր Յիսուս յերկար ժամանակեա[յ] արասցէ մեզ ընդ երկայն աւուրս, ի հայրապետութեան աստուածապատիւ Տեառն Գրիգորի Անաւարզեցո[յ] Հա[յ]ոց կաթողիկոսի, ի վերադիտողութեան տանս Սիսակա[յ] սուրբ և ընտրեալ քաջ հռետորի և անյաղթ սոփեստի Տէր Յովանէսի Աւրպէլ արքեպիսկոպոսի, որդոյ իշխանաց իշխանի Լիպարտի, յաջորդող և աթոռակալ զկնի Տեառն Ստեփանոսի, զոր տացէ զսա մեզ Տէր ընդ երկայն աւուրս ուղեղ վերակացութեամբ:

Արդ, բարի և աստուածասէր այր Դանիէլ՝ որ||(451ա)դի Մանուէլի, հա[յ]եցեալ և իմացեալ, թէ այսմ կենցաղս դիւրաւ սպառելոց է և վաղիւ կորնչելոց և նկատե[ա]լ զիմանալի աշխարհն և ցանկացեալ սիրոյն Քրիստոսի, ստացաւ զսա ազնական և բարեխաւս իւր և ծնաւղաց իւրոց, հաւր իւրոյ՝ Մանուէլի և մաւր իւրո[յ] տիկնոջն բարի ամուսնո[յ] իւրոյ՝ արքայիկնա[յ] և ծնաւղաց իւրոց և քրիստոսասէր զաւակաց իւրոց՝ Մուսէսի, Մանուէլի և այլոցն, և հոգևոր որդո[յ] բստ ազգանին Դաւթի Թաւրիժեցոյ, որ և զիս յորդորեաց յայս գործս բարի, և հարազատ եղբարց իմոց՝ Պարսամին և այլոցն:

Արդ, ես անարժան ծառայս Աստուծոյ Դանիէլս ի գուճ անկեալ աղաչեմ զձեզ՝ զկայծակնաճաշակ և զաստուածամաքուր սուրբ քահանայսդ և զայլ ամենայն հաւատացեալսդ, որք ժողովիք առ դուրս Սուրբ Կաթողիկէիս, որք ընթեռնուք և աւգտիք և որք լսէք և ի միտ առնուք, վասն սիրոյն Քրիստոսի, յիշեցէք զիս և զվերագրեալսս ի սմա, և Աստուած զձեզ յիշեսցէ յայսմ աշխարհի և ի

հանգերձեալն յիւրում արքա[յ]ութեան, և զուք և մեք առ հասարակ ի միասին աւրհնեալ եղիցուք ի շնորհաց Որդւոյն Աստուծոյ, զամէնն և զեղիցին ասասցեն սուրբք և հրեշտակք, որպէս և նմա փառք յաւիտեանս:

137բ. Զամէնաւրհնեալ այրն Աստուծոյ զԴանիէլն յիշեցէք ի Քրիստոս և աստուած զձեզ յիշէ:

224բ. Յիշեցէք ի Քրիստոս զԴանիէլն և զծնաւղս նորա:

354ա. Քրիստոս, յիշեա զԴանիէլն և զծնողս նորա:

449բ. Մժլըմ, լըբւ վըրծոհչ վժթժղմ (=Սարգիս գրիչ յիշեցէք յաղաւթս):

Թէ կարդաս՝ դպիր ես և թէ ոչ՝ մի մեղադրել, պատճառ իմաստից է:

Որ յայս սուրբ Աւետարանէս թուխթ արուչէ վասն կարելոյ, որ որոշել լիցի և նա ի շնորհաց Հոգւոյն Աստուծոյ:

450ա. (Ներքևի լուսանցքում այլ գրչով լուծված է առաջարկվող գաղտնագիրը և առաջարկված նորը).

Եղբայր սիրո, և խոնհամ բատ հանճարո, ծանիր փակեալ գիրդ այս թէ՝ զՍա[ր]գ[ի]ս գրիչ յաղ[աւթս] յիշեցէք:

Ապա թէ այլ գրես համանգամայն զորոյ որ կամիս կամ զառաջին գրերն գրէ՝ կամ զվ[երջին]: Այս միոն յաջնէն է և միոն ի յետնէն: Եւ զիմս կարդա. ք՛, ը՛, ք՛, ւ՛, ւ՛, է՛, պ՛, խ՛, ո՛, դ՛, ը՛, ք՛, է՛, ///:

### Հետագայի

ա. 452ա. Զվերջին նորոգաւղ այս լուսաւոր մաքրափայլ և մեծապայծառ սուրբ Աւետարանիս, բարէմիտ և զորքասէր և մեծահաւատ տան Ղամբար, որ նա կազմել զսուրբ Աւետարանս՝ յիշատակ իւրն և իւր ծնաւղացն, հայրն՝ Իսպահանշին և մայրն՝ Խոնդկարին և կենակիցն իւր՝ Ոսկեղանին, պահապան իւրն և իւր զաւակացն, և նա նորոգել զսա ի հալալ ընչից իւրոց և բժիշկ հոգոյ իւրոյ, կցորդ, յոյս և ապաւէն առ Քրիստոս և ճար՝ ճանապարհին վերջին և բանալի՝ դրան արքայութեան և զանձ՝ յերկինս անկողոպտելի և առ Քրիստոս միջնորդ և բարեխաւս իւրն և իւր ծնաւղացն և ամենայն արեան մերձաւորացն, ամէն:

Դարձեալ աղաչեմ յիշեցէք ի մաքրափայլ յաղաւթս ձեր Զաքէոս քահանայ հանգերձ ծնաւղաւքն, ընդ նմին և զԱստուածատուրս, որ աւգնական եղէ ի կազմելն սորայ. և որ շատ և որ սակաւ աշխատանք ունին ի յայս սուրբ Աւետարանս, Աստուած միոյն հարիւրապատիկ տացէ այժմ և ի հանդերձելումն. ամէն:

Աղաչեմ զձեզ, ով սուրբ ընթերձողք, յորժամ ընթեռնուք կամ աւրինակէք, խնամքով բանէք, զի թուխտն խիստ բարակ է և բազում աշխատութեամբ կազմեցաւ, զի յոյժ հնացեալ էր և ծերացեալ այս սուրբ Աւետարանս: Ի թվականիս ՋԽԳ (1494) կազմեցաւ:

բ. 452բ. Եւ դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս, ով հարք իմ և եղբայրք, զվերջին գրող սուրբ և կենաատու, ամենափրկիչ Աւետարանիս ընթերձողք.

ԶՍտեփաննոս մեղօք լցեալ
Եվ քահանայ անուամբ կոչեալ,
Բայց ի գործոց յոյժ հնացեալ,
Զեվլով միայն կեղծաւորեալ,

Ի յաշխարհէ ալեաց նմանեալ,
Բազում տեղիք շրջագայեալ,
Յետոյ եկեալ ի յայս բնակեալ,
Որ Ագուլեաց վանք կոչեցեալ,
Որ է Թօմաս սուրբ առաքեալ:

Արդ, ի թվականութեանն Հայոց ՌՄԻ և Բ (1773) եղև նորոգումն սուրբ Աւետարանիս, որ անկեալ է ի ձեռս անօրինաց, որ և եղեն պատճառ սորայ նորոգելոյն Ագուլեցի Օվանէսի որդիք՝ Մկրտիչն, Կարապետն, Զաքարիայն և Յարութիւն. Աստուած իւրեանց կար և կարողութիւն տացէ, գործոց նոցին բարիաջողումն տացէ, և իւր ծնողացն և համայն ննջեցելոցն հանգիստ և արքայութիւն պարգևեսցէ, և իւրանքն որքան կենդանի են, սուրբ Աւետար[ան]իս զօրութեամբ ամենայն չարեաց և փորձանաց փրկեալ պահեսցէ. և թէ հարցանէք սոցա՝ մականուամբն Շեխինց տղայքն: Եւ յետ նորոգելոյն Դ (4) Ե (5) դարի անցաւ, գրող չի գայր, որ սորա պակասն գրէր և լցուցանէր. յարն եղև մեղաւորիս, սորա պակասն գրեցի խիստ նեղութեամբ, զրա (որովհետև) աչքս չէր տեսնիլ, ձեռքս կու դողայր. ծերութեան ժամանակիս կարողութեամբն Աստուծոյ աւարտ հասուցինք: Ով ոք որ ընթեռնուք, զրի խոշորութեան և սղալանացն ներումն շնորհէք, քանզի կար մեր այս էր:

Արդ, աղաչեմ, զձեզ, ով ընթերցողք սուրբ Աւետարանիս, միով Հայր մերիւ յիշեցէք զվերոյգրեալ նորոգողքն, և զգրողն յիշեցէք և Աստուած ողորմի ասացէք, և դուք յիշեալ լինիք առաջի Քրիստոսի, ամէն:

Եղև նորոգումն ի հայրապետութեան սուրբ էջմիածնի տեառն Սիմէոն կաթողիկոսի և սուրբ ուխտիս առաջնորդ Թօմաս վարդապետի. լիցի երկար կեանս. ամէն:

գ. 453ա. «Արտագրութիւն յիշատակարան»

Ի 1827 ամի Տեառն և ժամանակս խռովութեանց պատերազմի Ռուսաց և Պարսից, եկին յանկարծ հէնք բարբարոսք յաւանն մեր Ագուլիս, որ առ-գետովն Երասխայ, և անողորմաբար կորուսեցին զազգս մեր, և աւերեցին զտունս մեր, ընդ նոյն յափշտակելով և զեկեղեցին, և զսուրբ սքանչելագործ Աւետարանս զայս: Որ և երբեմն ի գիրառէ (*) ազատեալ է ի տոհմէն Շեխեանց: Իսկ արդ մեք չորքիւ եղբարքս Գէորգ, Թհան, Զաքարեայ, և Յովհաննէս Մկրտչի Հ[ա]խն[ա]զարեանց Վերին Ագուլեցի. վառեալ ի սէր սուրբ հաւատոյ, և ազգի, և եկեղեցւոյ, գնայաք ի զանազան տեղիս դառն աշխատանք կրելով հարց և փորձ արարեալ և ի հրաշագործութենէ նորայ գտեալ՝ և բարբարոսաց տուեալ բազում զանձս՝ յետս դարձուցաք. և մեծաւ հանդիսիւ հանգուցաք յեկեղեցւոջ Սուրբ Յովհաննէս Մկրտչին Խեցեայձորայ թաղին:

Եւ արդ յերեսս անկեալ պաղատիմք զմաքրումից ընթերցողաց և ջերմեռանդ հանդիպողաց սուրբ ամենափրկիչ ձեռագիր կարմրակազմ Աւետարանիս և Նոր Կտակարանիս Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, յիշեսջիք ի Քրիստոս յոյսս ամենից մաքուր աղօթիւք զծնողսն մեր, զազգս, և զընտանիս և զմեզ զկենդանի յիշատակս նոցա, որպէս զի արժան աղօթիւք ձերովք և բարի մաղթանօքն հաշտեսցի ընդ նոսա և ընդ մեզ ամենազօր անաչառ դատաւորն ի միւս անգամ գալստեան իւրում, յիշեսցէ և զամենայն հաւատացեալս յարքայութեանն ե[ր]կնից պարգևելով մեզ զխոստացեալ պարգևս մխիթարական ձայնիւ և երանական և կենդանի մնացելոյս օրհնեսցէ զերկրաւոր զկեանս՝

պահելով ի խաղաղութեան, և յիշողքդ յիշեալ լիջիք առաջի Քրիստոսի Աստուածոյ մերոյ ի հանդերձեալ աշխարհի. ամէն: Ի 1848 ամի, ի 25 հոկտեմբերի ամսայ:

Ընչանալու նեթակոյ սոյն յիշատակարանը արտագրեց* ի 1931 թ. մայիս 2-ին ի Թաւրիզ (Պարսկաստան):

453բ. 1918 թ-ի Ակուլիսի կոտորածից թալանին Ակուլիսն էր և բերում են ծախում Պարսկաստան՝ Թաւրիզում և Խոյում:

1921 թւ. Թաւրիզ. Գարսէվան Սողոմոնեան, տարագիր Սալկածորցի: (Նույն էջի վրա դրոշմաթուղթ). «Made in Persia, Աւետարան, № 21»:

5

ԱՒԵՏԱՐԱՆ

(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան, Arm. MS № 4)

Երուսաղեմ · ՉՀ—1321

Գրիչ՝ Ներսես աբեղա: Թերթ՝ 562 էջ: Նյութ՝ թուղթ: Մեծություն՝ 12,5×14: Գրություն՝ երկսյուն: Տող՝ 21: Մանրանկարչություն—Կիսախորան՝ յուրաքանչյուր Ավետարանի սկզբում: Լուսանցազարդ՝ բուսական: Զարդագիր՝ հանգուցագիր: Գույներ՝ սև, երբեմն կարմրադեղով: Կազմ՝ դրոշմազարդ կաշեպատ տախտակ, աստառ՝ մետաքսե գործվածք: Պահպանակ՝ վերջում երկու թերթ թղթե ձեռագրից (ԺԳ—ԺԴ դարեր): Վիճակ՝ բավարար, միայն կազմի վերևի աջ անկյունը ջարդված, կաշին պատռված:

Ծնթ. Ձեռագիրը թերթակալված չէ. էջաքանակը՝ ըստ գրադարանի քարտի: Մատթեոսի Ավետարանի սկզբնաէջի վրա՝ կնքադրոշմ «7260»:

Ձեռագրին կցված անգլերեն չորս էջանոց մի նամակում, գրված 1891 թ. հուլիսի 22-ին Քլիֆտն Սփրինգսից (Նյու-Յորք), հասցեագրված դր. Հ. Ցանթերին, նամակագիր Մերի Փ. Ռայթը հայտնում է, որ ինքը քննել է միս Բուշի կողմից Հ. Ցանթերին նվիրված ձեռագիրը, և տեղեկություններ է տալիս գրչի, ժամանակի և բովանդակության մասին: Նամակագիրը ըստ երևույթին, ծանոթ չի եղել հայկական տոմարին, ուստի և ժամանակի համար նշում է ոչ ուշ քան 14-րդ դար, մինչդեռ հիշատակարանում պարզ գրված է հայոց ՉՀ թվականը (1321):

Հիշատակարան

Գրչի

Փառք... Գրեցաւ յաստուածային և սուրբ Աւետարանս այս ձեռամբ մեղապարտ գծողի Ներսէսի սուտանուն աբեղայի, ի սուրբ քաղաքս Երուսաղէմի. ընդ հովանեաւ սուրբ տնօրինականացս Քրիստոսի աստուծոյ մերոյ փրկչի և

* Այս հիշատակարանը իրականում ոչ թե արտագրված է, այլ մեկ առանձին թերթի վրա տպագրված և կցված է ձեռագրին:

Սուրբ Հրեշտակապետացս Միքայէլի և Գաբրիէլի և Ռափայ[ել]ի, ի թագաւորութեանն Հայոց Լևոնի, որդոյ Աւշին թագաւորի, և ի հայրապետութեան Տեառն Կոստանդի, որ կոչի Դրազ[ա]րկցի, ի յաթոռակալութեանս Երուսաղէմի Տէր Վարդ[ա]նի:

Արդ, աղաչեմ զամենեսեան, որ հանդիպիք ի սմա ընթերցման բանի և ողալի՝ նա զուք ուղղեցէք սիրով և մի եպերեք, զի ի վշտալից ժամս գրեցի, յորժամ անաւրէն ազգն Մահմետի յարեան ի վերա երկրին Կիլիկէի և աւար արարին և բազումք գերի վարեցին և զսուրբ եկեղեցիսն վերուստ ի վայր տապալեցին, որ Էջմիածին անուն կոչի, և զայլսն:

Դարձեալ աղաչեմ անմեղադիր լինել խոշորութեան, զի կար մեր այս էր, այլ զի ցանկայի սուրբ Աւետարան և վասն չունենորութեան համարձակեցայ գրել զսուրբ Աւետարանս ի վայելումն ինձ և յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց՝ Աստարշահի և Շնոհֆորի և մեծ մայրկան իմոյ՝ Մէնտիկնայ և քենեկանն իմոյ՝ Յովանիսի, որ Կրակցի կոչի և մաւրաքաւր որդոյն իմոյ՝ Կոստանդին արեղայի:

Գրեցաւ ի յնտիր աւրինակէ, որ Զորկցի կոչի, ի թուաբերութեանս Հայոց ՉՀ (1321), ի փառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ...

Հետագայի

ա. (Մատթեոսի Ավետարանի սկզբնաթերթի վրա) Խաչատուր Հ. Մինասեան Հողեցի:

բ. (Ղուկասի Ավետարանի վերջում) Ես // ոս Երէցս գնեցի զԱւետարանս ի Կիրակոս երիցուն Կ (60) տայիրի՝ ինձ յիշատակ և ծնողացն իմոց:

6

**ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ**

(Նյու-Յորք, Տիրան արքեպս. Ներսոյան)

Ակներ ՉՀԸ—1329

Գրիչ, ծաղկող, կազմող՝ Կարապետ: թերթ՝ 210: Նյութ՝ մագաղաթ: Մեծություն՝ 10×7,2: Գրություն՝ միասյուն: Գիր՝ բոլորգիր: Տող՝ 16: Մանրանկարչություն—Ճակատազարդ՝ 1ա, 45ա, 61բ, 93ա, 158բ, 172ա, 191ա: Լուսանցազարդ՝ բուսական: Զարդագիր՝ թռչնագիր և հանգուցագիր: Կազմ՝ դրոշմազարդ կաշեպատ տախտակ, աստառ՝ խաչազարդ գործվածք. խաչերի թևերին՝ ՏՐ ԱԾ ՅՍ ՔՍ: Վիճակ՝ բավարար. վերջին թերթերը ջուր տեսած, մասամբ սևացած և որոշ տեղեր անընթեռնելի:

Ծնր. Ձեռագիրս 1972 թ. հունվարի 21-ին Նյու-Յորքում տողերիս գրողի միջոցով գեր. Տ. արքեպս. Ներսոյանը նվիրեց Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10523):

## Հիշատակարան

### Գոչի

*209ա. Փառք... գրե‖(209բ)ցաւ եղանակ[աւոր տառս, որ կոչի] Մանրուսումն [ի թվին ՉԼԸ] /// Յակոբայ, [ի թագաւորութեանս Լև]ոնի, ի Հրեշտակարնակ վանաւրէից, որ կոչի Ակներ, [ձեռամբ] կրկնամեռ անձ[ի]ն Կա*ռա[պետի]**:*

*Արդ, որք պատա[հիք] /// կամ աւրինակէ, յի[շեց]էք ի [մեղաւ]քաւիչ աղաւթս ձեր զեղկելի գրողին, այլ և զծաղկաւղ և զկազմաւղ սորա* զԿ[արա*պետ] և ծնաւղսն մեր, զի խիստ ի կարիս եմք, և Տէրն հատուցող ձեզ յիշ[ո]ղացդ և մեզ յիշելոցս ողորմեսցի յիւր կրկնակի գալստեան, և նմա փառք: Գրեցաւ տետրակս յաւրինակէ* Գրիգորի, *որ մականն ///‖(210ա) [հօգոյ] իմոյ և ծն[ողացն իմոց] /// Մանկատա[գ] ///* Մամխարունին *// եացն ի Քրիստոս և ամենայն ազգ[ականաց] իմոյ: [Աղա]չեմ զամենեսեան [որք հան]դիպիք [սմա]յ, յիշեսջիք ի մաքր[ափա]յլ յաղաւթս ձեր ի Քրիստոս զմեզ. ինքն, որ առատն է ի տուրս բարեաց, մեզ և ձեզ ողորմեսցի յաւուրն մեծ և ահեղ դատաստանին, և նմա փառք յաւիտեանս. ամեն:*

*171բ. Զգրողիկս յիշեա Տէր-ողորմեայիւ:*

### Հետագայի

*ա. 210ա. Արդ գնեցի սաւ յԵրուսաղէմ ի թվին Հայոց ՊԺ (1361) ամի /// և այժմ է թվիս ՊԻԳ (1374) ամին, և Քրիստոսի մարդասիրին փառք յաւիտեանս. ամեն:*

*բ. 210բ. Նուաստ ծառայ Յիսուսի Քրիստոսի, որ գնեցի զգիրքս տետրակս ի վայելումն անձին իմոյ թվին ՊՀԶ (1427): Ո՛վ սուրբ դասք լուսաւորեալ (?)...*

*նրամից սրբոյ եկեղեցոյ մանկունք, յիշեցէք ի սուրբ յաղաւթս ձեր զմուրգուր իմ* զՄարգարիտն, *որ զգիրքս գնեց: Դարձեալ աղաչեմ թողութիւն խնդրէք ծնողաց իւրոց* Մամխարունին *և հաւր նորա* Մկրտչին *և զաւակի նորա* Մարեմրագին *և* զԽեռխարունին. *թողութիւն խն[դրեցէք] ///:*

---

* *Գեր. Տ. արքեպս. Ներսոյանը մեզ հայտնեց, որ ձեռագիրը համաշխարհային երկրորդ պատերազմի տարիներին Լոնդոնում իր մոտ է եղել և վնասվել է շրից, որի հետևանքով հիշատակարանի որոշ հատվածներ անընթեռնելի են դարձել, բայց քանի որ ինքը նախապես ծանոթ է եղել հիշատակարանին, 209ա էջի լուսանցքում սև թանաքով նշել է թվականը՝ «ՉԾԸ (1309)», վայրը՝ «Ակներ» և գրչի անունը՝ «Կարապետ», ավելացնելով, որ «Թրքունեէն առաջ յստակ կը կարդացուէր. Ն. Վ. Տ»:*

*Մատենադարանի աշխատակից, ձեռագրագետ Օ. Եգանյանը կարդացած հիշատակարանի վնասված որոշ հատվածներ վերականգնել, որով պարզվեց, որ ձեռագիրը ընդօրինակված է ՉԼԸ (1329 թ.) և ոչ ՉԾԸ (1309) թվականին: Միաժամանակ պետք է ավելացնել, որ 1309 թ. Լևոն թագավոր չենք ունեցել: Հիշատակարանի մեջ վկայակոչվածը Լևոն Դ-ն է (1321—1342): Սրա ժամանակ, նույն 1329 թ., Ակներում եղել է Կարապետ անունով մի գրիչ, որ այս հիշատակարանի նման այլ հիշատակարան է թողել իր ընդօրինակած մի Ավետարանում (տե՛ս «ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ», կազմեց Լ. Խաչիկյան, 1950, էջ 219):*

## 7

## ՄԱՆՐՈՒՍՄՈՒՆՔ

(Ֆրեզնո, Միքայել Փափազյան)

Գռազարկ ՉՀԶ—1327

Գրիչ՝ *Ստեփանոս*: Ստացող՝ *Վասիլ սարկավագ*: Թերթ՝ *243*: Նյութ՝ *մագաղաթ (թուղթ՝ 155, 157—161, 163, 243)*: Մեծություն՝ *9×12,5*: Գրություն՝ *միասյուն*: Գիր՝ *բոլորգիր*: Տող՝ *16*: Մանրանկարչություն—*ճակատազարդ՝ 27բ, 55բ, 76բ, 116ա, 180ա, 196ա, 212բ: Լուսանցազարդ՝ բուսական*: Զարդագիր՝ *թռչնագիր և հանգուցագիր*: Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ*: Պահպանակ՝ *սկզբում 2 թերթ թուղթ (ԺԷ դ., բոլորգիր, միասյուն, մասն քարոզի)*: Վիճակ՝ *բավարար, կազմի Բ փեղկի տախտակը կտրված*:

Ծնթ. *Ձեռագիրս 1972 թ. հունվարին Ֆրեզնոյում տողերիս գրողի միջոցով պրն. Միքայել Փափազյանը նվիրեց Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10524)*:

### Հիշատակարան

#### Գրչի

*76ա. Զմեղաւք դատապարտեալ ծառայս Աստուծոյ զ*Ստեփանոս յեր-կ[այն] *յիշեցէք աղաւթիւք՝ ի մեղաց թողութիւն*:

*212ա. Զստացաւղ մատենիս՝ զպատուական սարկաւագ* Վասիլ *և զմեղաւոր հոգս՝* Ստեփանոս յերկ[այն] *յիշեսջիք ի մեղաց թողութիւն*:

*236ա. Փառք... Ի թուականին Հայոց ի ՉՀԶ (1327) գրեցաւ եղանակ[աւ]որ ատոս ի սուրբ և հռչակաւոր ուխտս* Գռազարկ *ձեռամբ մեղաւթաւոր || (236բ) և անարհեստ, սուտանուն գրչիս* Ստեփանոս յերկա[յն] *ի թագաւորութեան* Լեոնի *դեռաբոյս պատանեկին, զոր Տէր Աստուած ընդ երկայն աւուրս պահեսցէ, և ի հայրապետութեան* Տէր Յակոբայ, *ի խնդրոյ աստուածազարդ և սրբասէր եպիսկոպոս* Տէր Վարդանայ *և քուէրորդւոյն իւրոյ՝ պատուական սարկաւագ* Վասլին:

*Արդ, աղաչեմ զամենեսեան, որք հանդի[պի]ք սմա ուսմամբ կամ աւրինակ գնելով, յիշեսջիք աղաւ||(237)թիւք մեղաց թողութիւն զյառաջասացեալ սրբասէր եպիսկոպոս* Տէր Վարդան *և զ*Վասիլ *սարկաւագ և զծնողս նոցին. նաև զմեղաւոր հոգս* Ստեփանոս *և ծնողսն մեր, և որք յիշէքդ զմեզ սրտի մտաւք՝ յիշեալ լիջիք և դուք ի նոյն ողորմած Տէրն, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն*:

*Աղաչեմ չլինել մեղադիր խոշորութեան և սխալանաց, զի կար մեր այս էր: Բայց գրեցաւ ի ստոյգ և յընտիր աւրինակաց, որպէս ահա յայտնի է ստոյգ գիտողաց*:

#### Հետագայի

ա. *243ա. [Ի թ]ուաբերութիւն Հայոց ՋՁԱ (1532) վասն քարոզութեան և ողորմութեան աշխարհիս, դարձեալ նոյեմբերի ԺԳ (13) եկաք և ճանապարհ*

արարաք բարի երթալու Երուսաղեմ, և մեք բազկատարած և հառաչմամ[բ] սրտի հանապազ տալով զաստուածային ուրհնութիւն իմ հոգևոր եղբաւրն Տէր Յովանէս աւագ քահանային. ամէն:

բ. 161ա (ԺԹ դ., շղագիր)

Ձեռքս զըն[ալ]՝ զառնալ ի հող,
Գիրքս մընալ՝ յիշատակող:
Կափիրացի Մ. Յովանէսի հընազէան է զայս գրող,
Ոտից կոխան ձերց ի հող:
Հայ[ր] մեր որ:

Ծնթ. Կից՝ ձեռագրիս համառոտ նկարագրությունը (կատարված Գ. Հովսեփյանի կողմից) և Ներսես Ակինյանի հետևյալ արժեքավոր նամակը՝ հասցեագրված վերջին ստացող Միքայել Փափազյանին.

Վիեննա, 19 յունիս 1934

Մեծապատիւ

պր. Մ. Փափազեան

Հաճութեամբ կարդացի Ձեր պատուական գրութիւնը, որ կը հաղորդէր ինձ նորութիւն ձեռագրական աշխարհէ:

Ձեռագրիդ բովանդակութիւնն է Մանրուսմունք, կոչուած նաև Խազատետր և Խազգիրք: Կը պարունակէ մեղեդիներ և կցուրդներ, որոնք կ'երգեցուին (նաև այսօր) գիշերային, առաւօտեան, ճաշու և երեկոյեան ժամերգութեան ժամանակ: Պետք է նկատել «Մանրուսմունքն» տեսակ մը դասագիրք կամ առաջնորդ, որ նպատակ ունի երաժշտասէրներուն ուղղութիւն ցոյց տալ յիշեալ հատուածներն—որոնք սովորաբար solo կ'երգեցուէին—ի բերան ուսանելու: Մանրուսմունքներ երևան կու գան ձեռագիրներու մէջ սկսեալ ԺԳ դարու վերջերէն: Ինձի ծանօթ են օրինակներ 1312-էն (գրուած ի Սիս Գրիգոր քահանայէն), 1325-էն (գրուած ի վանս Գալու Գրիգոր Ձորոյեցի օրինակէն), 1352-էն, 1353-էն, 1365-էն, 1373-էն ևն: Ձեր օրինակին գրիչն Ստեփանոս Երկայն ծանօթ է ուրիշ ձեռագիրներէ ալ: Զարմանքով նկատեցի, որ Ձեր օրինակի վրայէն ծագած է Գաղատիոյ Զարխափան վանքի Թ. 8 Մանրուսմունքը, գրուած հաւանօրէն ԺԴ դարում, ուր պահուած են նաև յիշատակարանները ամբողջութեամբ բառ առ բառ (ըստ Աղան վ. Համամճեանի ցուցակագրութեան. անտիպ): Դրազարկի մէջ գրուած ձեռագիրներու շարքին կը դրուէ Ձեր օրինակը յետնագոյն տեղին, զոնէ շատ ծանօթ չեն 1327-էն յետոյ այս վանքին մէջ գրուած ձեռագիրներ:

Կը յուսամ թէ տողերս պիտի գոհացնեն Ձեր հարցասիրութիւնը:

Կը շնորհաւորեմ զՁեզ, որ ունիք այսպիսի պատուական Ձեռագիր մը և կը մաղթեմ, որ իբրև մնացորդ նախնեաց պահպանէք խնամով, մինչև որ հասնի մեծ Մատենադարան մը, ուր գտնէր պատուաւոր տեղ մը ի վայելս գիտութեան, յատկապէս երաժշտագէտներու:

Ես չափազանց շնորհակալ եմ Ձեր ազնուութեան, որ բարի եղաք ծանօթացնել ինձ ձեռագիրս. իցի՜ւ հետևէին Ձեր բարի օրինակին ոչ միայն ուրիշ նման հնութեան սեպհականատէրներ, այլ և մեծ հաւաքածոյքներու տէրեր...

*որոնք կը սիրեն միայն ամբաժածուկ պահել նախնեաց մնացորդները, իրենք չեն օգտուիր և թոյլ ալ չեն տար այլոց օգտուելու: Փորձառութիւնս յոյժ մեծ է դժբախտաբար:*

*Երախտագէտ զգացումներով և յարգանքներով.*

Հ. Ն. Ակինեան

8

## *ՄԱՏԵԱՆ ՈՂԲԵՐԳՈՒԹԵԱՆ*

*(Սան Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 2)*

Քեմնակի վանք (Ղրիմ) ՊԻԲ—1373

Գրիչ և ծաղկող՝ *Քրիստոսատուր:* Ստացող՝ *Մաղաքիա:* Էջ՝ *301:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *21:* Մանրանկարչություն—*լուսանցազարդ՝ բուսական:* *Զարդագիր՝ թռչնագիր:* Կազմ՝ *դրոշմազարդ կաշի:* Վիճակ՝ *բավարար:*

Ծնթ. *Ձեռագրի 1 և 300 էջերի վրա դրված է գրաքննչական պարսկերեն կնքադրոշմ (տե՛ս № 4 ձեռագրի ծանոթ.):*

*40-ական թվականներին ձեռագիրը գտնվել է նյույորքաբնակ գորգավաճառ և հնահավաք Պարույրյանի մոտ, որից և ձեռք են բերել Մարտիկյանները:*

*Հավանաբար այս մատյանը պատկանում է 1918 թ. Ագուլիսից թալանված և հետագայում Թավրիզում վաճառված ձեռագրերի խմբին (հմմտ. № 4):*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

*էջ 1—277. Մատեան Ողբերգութեան Գրիգորի Նարեկացւոյ. բան Ա—ՂԶ:*
*էջ 277—278. Յիշատակ մատենիս գրութեան:*
*էջ 278—299. Վարք սրբոյ առնն Աստուծոյ Գրիգորի Նարեկացւոյ:*

Հիշատակարան

Գրչի

*էջ 299. Փառք... ‖ (էջ 300)... Արդ, եղև գրաւ գրչութեանս ըստ հոլովման շրջագայութեան ամաց թվակի ազգանազեան ազին աբեթական տումարի երկեակ քառից հարիւրոց և տասանց վեցից և թուոց վեցից (1373),* յաշխարհն ճանաց, *որ կոչի* Ղրիմ, *ի հայրապետութեան* Գրիգորի *և մերոյ արքեպիսկոպոսին* Տէր Կիւրեղին, *ձեռամբ թարմատար և փցուն գրչի* Քրիստոսատուր *պիտականուն կրաւնաւորի, ընդ հովանեաւ հաշակաւոր երկնահանգէտ և սուրբ ուխտիս, որ կոչի* Քեմնակի *վանք, յանուն կենսակիս մաւրն լուսոյ* Սուրբ Աստուածածնին *և առ հանգստարան երջանիկ և սուրբ հաւրն մերոյ խաչաչարչար փառաճարակ մեծ ճգնաւորին Քրիստոսի և ի տիեզերալոյս* Անտոն *վարդապետին՝ յոյժ վայելուչ զուարթատեսիլ և արամահալած լեառնային և դաշտային ծովահայեաց:*

*Արդ, այժմ հոգէպատում սուրբ կտակիս և աստուածաբանեալ սուրբ մատ||(էջ 301)ենի՝ հոգէնորոգ և արտաւորածին, այսահալած և բուժիչ ցաւոց, լուսաւորիչ հոգւոց և փարատիչ խաւարային խորհրդոց, խորտակիչ ամբարտաւանութեանց և վարժիչ նուաստախոհութեանց, ցանկացաւղ եղեալ սրբասնեալ և կուսակրաւն քահանայն* Մաղաքիա *(քերված և գրված* «Յոհան») *և ստացաւ զսա արդեանց իւրոց՝ ի վայելումն անձին իւրոյ և հրահանգ և վարժիչ հոգւոյն և մտաց և ի յիշատակ ծնաւղաց իւրոց (բաց թողնված տողեր են եղել, որտեղ գրված է հետագայի հիշատակարան)։*

*Որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր* Մաղաքիա *(քերված և գրված* «զՅոհան») *աբեղան՝ զստացաւղ գրոցս և զծնաւղսն իւր և զամենայն արեան մերձաւորսն, և զիս զանպիտան գծողակս* զՔրիս[տոսա]տուր *աբեղայն և զիմսն ամենայն։ Յիշեսջիք և զշնորհաւղ աւրինակիս* զՍարգիս *կրաւնաւոր՝ սպասաւոր* Սուրբ *Նշանին (մեկ ու կես տող բաց) և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, որ է աւրհնեալ յաւիտեանս. ամէն։*

*էջ 3. Զնուաստ հողս* զՔրիստոսատուր *կրաւնաւոր և ստացաւղն* զՄաղաքիա *(քերված) կրաւնաւոր յիշեսջիք աղաւթիւք առ Քրիստոս։*

*էջ 71. (էջի ներքևի լուսանցքում) Զշեշտերն յաղագս եղանակի եդի, որ տանաչափն ուղորդ գայ և ի գոյնն, զի լալիք է։*

*էջ 122. Զանարժան գծողս աղաչեմ յիշել ի Տէր։*

*էջ 192. Ո՜վ սուրբք Աստուծոյ, որք աղաւթէք լուսափիգձ մատենի, զողորմելիս և զանարժան[ս]* Քրիստոսատուր *կրաւնաւորս և ստացաւղ սուրբ կտակիս* Մաղաքիա *կրօնօրն յիշե[սջիք]ի Քրիստոս։*

Հետագայի

ա. *էջ 299. Արդ, ես խոջայ* Փիրումս *ստացայ զսուրբ գիրքս, որ կոչի Նարեկ ի հալալ արդեանց իմոց առ ի վայելումն որդւոյն իմոյ* Տէր Յոհանին *և յիշատակ ի դուռն* Թումայի սուրբ առաքելոյն: *Մի՛ ոք իշխեսցէ հանել և կամ վաճառել զսա ի դրանէ սորին։ Եւ որք յանդգնին՝ զբաժակն Յուդայի արբցեն։*

*էջ 301. ...խոջա* Փիրումին *և* Մարիամին *և եղբարց իմոց՝* Հախնազարին. Հայրապետին. Թէոդորոսին. Անդրէասին. Ստեփաննոսին. Մկրտչին *և ամենայն բնտանեաց իմոց։*

*Եւ յորժամ ստացայ զսա, էր թուական Հայոց ՌՃԻ (1671),*

բ. *էջ 146. (Վերի լուսանցքում) Յայոց թվին ՌՄԽԸ (1799). ԼԻԺԵՍ (ծածկագի՞ր)։*

9

ԱՒԵՏԱՐԱՆ

*(Սան Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 1)*

ԺԴ—ԺԵ—XIV—XV

Թերթ՝ *281։ Նյութ՝ մագաղաթ (թուղթ՝ 83—90, հետագայի հավելում)։* Մեծություն՝ *12,5×17,5։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Մանրանկար-

շարքյուն—խորան՝ 7 (*Թուղթ Եվսեբի*՝ *2բ, 3ա, Համաբարբառ կանոններ*՝ *4բ, 5ա, 6բ, 7ա, 8ա, 9բ, 10ա*)։ *Մատթեոս*՝ *14բ, Ղուկաս*՝ *139բ, Հովհաննես*՝ *219բ, երկգույն* (*կարմիր և կապույտ*)։ *Կիսախորան*՝ *15ա, 140ա, 220ա*։ *Լուսանցազարդ*՝ *բուսական*։ *Զարդագիր*՝ *թռչնագիր*։ Կազմ՝ *արծաթապատ տախտակ, վրան խաչելություն, 8 փեղկի վրա մի քանի գունավոր քարեր, աստառը*՝ *չերտավոր գործվածք*։ Վինակ՝ *բավարար*։

Հիշատակարան

Հետագայի

ա. Կազմի վրա, խաչելության ներքևում՝ *Յիշ[ա]տ[ա]կ է ոսկերիչ* Յարութիւն, *ՌՄԾԳ (1804)*։

բ. *14ա. Աստուած լուսաւոր[ի] Հոռոմի հոգին մէ զօլաթեմ Ավետարանիս գին ավեց։ Աստուած լուսաւորէ* Կիմարի *հո[գին]...*

գ. *90 բ. 1918 թ. մարտի 7-ին մենք փախանք*։

դ. *139ա. Յիշատակ է սուրբ Ավետարանս* Յովհաննէս *և իւր եղբայր* Համբարձումին, *և իր զաւակ* Գէորգը *յաշխարհ եկաւ 1892 թուին։ Աստուած իւրայն յարեշատութիւն տացէ և խաղաղ կենօք պահեսցէ. ամէն*։

*149ա.* (*Նույն ձեռքով*) *խս* Գէորգը Յովսէփենց *մնաց անկատար*։

*289բ. Վա՜յ բեզ,* Մինաս, *Ռ (1000) բերան*։

10

*Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն*

(*Նյու-Յորք, Արսեն և Արմանդ Փուշմաններ, № 2*)

ՊՀ—1421

Գրիչ՝ *Բարսեղ*։ Ստացող՝ *Ներշա*։ Թերթ՝ *237*։ Նյութ՝ *թուղթ*։ Մեծություն՝ *16,5×23,8*։ Գրություն՝ *երկսյուն*։ Գիր՝ *բոլորգիր*։ Տող՝ *18*։ Մանրանկարչություն—*բոլորէջյան ապյուծ*՝ *69ա, Մարկոս*՝ *69բ, Ղուկաս*՝ *112բ*։ *Կնոջ նկար*՝ *236ա, Բարսեղ գրչի պատկերը*՝ *236բ* (*մակագրված. «Սուրբ Ստեփաննոս, բարեխաւս առ Աստուած վասն անարժան Բարսեղի, զի տաց զմեղացն թողութիւն»*)։ *Լուսանցազարդ*՝ *բուսական*։ Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ*։ Պահպանակ՝ *մագաղաթ, 1 թերթ սկզբում, 2 թերթ վերջում*՝ *Ժ—ԺԱ դդ.*։ Վինակ՝ *բավարար. վերջին թերթերը մաշված*։ *Նախկինում վերանորոգված և թերին լրացված*։

Հիշատակարան

Գրչի

*235բ. Փառք... Շնորհիւն Աստուծոյ սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս Ժ (10) ամով և անմեղ ձեռամբ իմով՝* Բարսեղի

տրուպ և անպիտան գրչի, մեղաւոր անձամբ: Արդ, աղաչեմ զամենեսեան՝ ախալանաց անմեղադիր լինել, վասն զի աստապանաւք և հեծութեամբ գրչի ի սոյդ աւրինակէ՝ զգանն և զայլ խորհուրդն ի չայլուստ բերելով:

Արդ, աղաչեմ զամենեսեան զընթերցողսդ, որ ընթեռնույք և լուսաւորիք կամ որք աւրինակէք գրչութեամբ, ինձ և ծնողաց իմոց՝ Կոստանդին և Մամաճանին, եւ նոցա մաւրն՝ Տաղկոցայ, և եղբարց իմ՝ Աբրհամա և Կարապետին և Դեղին և քվեր՝ Մառթային, և Հայրապետին և Երենկին, և ծրաղխ՝ Բարսեղիս և ամուսնոյ իմոյ: Ով հայ[ր]ք իմ, թողութիւն խնդրէք յԱստուծոյ, և նա կարող է ողորմութիւն շնորհել մինչև ձեզ. ամեն, ամէն, ամեն և ամենայն թամ||... (շար. էջերը թափված):

Սաացողի

237ա. Փառք... որ հասոյց զմեզ ի վերջ տառիս և աստուածաբան սուրբ Աւետարանիս: Արդ, աղաչեմք զամենեսեանքդ, որք հանդիպիք այսմ բարստանիս կամ տեսանելով և կարդալով, կամ աւրինակելով, կամ /// ով և ի սրտանչելացն Քրիստոսի բժշկութիւն և ի հրաշից և ախտամետս ցուցանելով, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացողս սորա զհայր Ներշա և զանդրանիկ զորդին իւր՝ զՋվանն, զփոխեցեալ յԱստուծոյ և յամենայն միահամուռ եկեղեցոյ ուխտէս և հասարակ ժողովրդոցս՝ մեծամեծաց մինչև փոքունս, և զմեծ եղբայր իւր՝ զԱշխիբէկ, և զհագեւոր մայրն մեր՝ զԴուսիայ և զքրքաւէր զուսարն քայրն մեր զԴոլմէլիփ և զԹանն[րն]՝ Աստուածատուր, Խաչատուր, Թամսեր /// Վախախ, Արամէլիֆ, որ են կենդա[նի՝] օրհնէ և զհանգուցելոցն՝ ողորմի /// Ամիրշայ, Սիրանշաւ, Ոսկի, Հռիփ[սիմէ]. բասացու և ես կաղմելն հալալ [ընչից]ի յիշատակ իւրեանց հոգոյն և նա /// յիշող յիշեալ լիջիք ի մին անգամ. ամէն: Թվին ՊՀ (1421):

Հետագայի

ա. 236ա. Աստուած վկա, ես Յովհաննէս անպիտան աբեղէս գրեցի: Փառք... ես Սմեւոնս, ես Աղաչանս, ես Վրդանեսս, ես Մարիամս տվինք մեր հայրենիք վերի ամբարն չափարովն վախմ ի դուռն Սուրբ Յովաննէս Մկրտչին յիշատակ ծնաւղաց մերոց, հաւրն մերոյ՝ Փանոսին, Աղայջանին մայրն մեր՝ Թոխինարին, Հասոյին և եղբարց մերոց՝ Մելիքին, հանգուցեալ առ Քրիստոս Եղիլին, Սրրիանոսին, Միրզաջանին և քվերն մեր հանգուցեալ առ Քրիստոս՝ Ջինարին, և հարսն մեր հանգուցեալ առ Քրիստոս՝ Գուլչհանին, վկայութեամբ Գրիգոր վարդապետին Ցաղնեցի: Ես Ամիրղուլի որդի տանուտէր Հայրապետս վկայ, ես Ալլանի որդի Սարգիսս վկայ, ես Ամիրի որդի Փիրղալամս վկայ: Ով հակառակ լինի այ[ս] վախմի... (անընթեռնելի երկու տող):

բ. 237բ. Այս մերձեալ աղաչեմք յիշատակել յաղօթս զհայր վանացս զմահտեսեայն Սուրբ Ստեփանոսին, զհայր Մարգարէն և զանդրանիկ զաւակ երիտասարդն իւր զՍտեփանոս, զդեռաբուսիկ ծաղիկն և զեղկելի կազմող՝ զՊօղոս Ցաղեցի, զաւեյածուս սուրբ Տուշանիս. և յիշողք՝ յիշեալ լիջիք ի մին անգամ զալուստն. ամէն:

գ. 237բ. Ես մահդասի Պօղոս իմ արտիւ յաւժարութեամբ ԻՌ (20.000) դա-

Հեկան տվի զուն սուրբ Յովանէս Մկրտչին վանմու, որ բանացընի, դարնն Ռ (1000) դահեկան տայ եկեղեցուն լուսագին։ Որ որ այլես ///։

11

ԱՒԵՏԱՐԱՆ

(Վաշինգտոն, Բաբկեն եպս. Վարժապետյան)

Սանահին ՊՂ—1441

Գրիչ և ստացող՝ Տերունական։ Ծաղկող՝ Հովհաննես։ Թերթ՝ 302 (604 էջ)։ Նյութ՝ թուղթ։ Մեծություն՝ 14×17։ Գրություն՝ երկսյուն։ Գիր՝ բոլորգիր։ Տող՝ 19։ Մանրանկարչություն—Համբարձում՝ էջ 465։ Մատթեոս՝ էջ 4, Ղուկաս՝ էջ 286։ Կիսախորան՝ էջ 5, 175, 287։ Կազմ՝ կաշեպատ տախտակ, դրոշմազարդ։ Վիճակ՝ բավարար. պակասում են Մարկոս և Հովհաննես ավետարանիչների և տերունական նկարները։

Հիշատակարան

Գրչի

էջ 599. Փառք... ‖ (էջ 600)... Արդ, ես Տէրունական արեղայս, յետինս ի կարգաւորաց, յէրէցի զբան մարգարէին, որ ասէ. Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն կամ ընդանի յԵրուսաղէմ։ Ընդ որս և ես մեծ յուսով և սուրբ սիրով գրեցի զԱւետարանս. զի թէպէտ չէի լաւագոյն, հմուտ այսմ արհեստի, այլ սէր կատարեալ ի բաց մերժէ զերկիւղն, ապաւինեցա յամենակարողն Աստուած, Բանն Հայր և շնորհաւք Սուրբ Հոգոյն կատարեցի և ետու ծաղկել Յոհանէս վարդապետի տիրական պատկե‖(էջ 601)րաւք, բոլոր տնաւրինականօք, փառօք աւետարանչօք և գեղեցկատեսիլ խորանօք և գիւրահանաց ծաղկաւք և զոյներանգ գեղօք, ծերացեալ աչաւք յաշխատեալ և նեղացեալ յոլով և կատարեալ կարողութեամբն Աստուծոյ։ Նոյն և ես՝ Տէրունական, ծերացեալ և նեխեալ անձամ[բ], յետինս աշակերտաց նորա, որով վրատահացուցց զիս ի շուք պատկերաց, կատարեցաւ շնորհաւք Սուրբ Հոգոյն դառն և դժնեա ժամանակիս, որով էառ զՇամշուլտա Ջահանշա ամիրզէն, գերեաց և կոտորեաց ի թվին ՊՂ (1441) ի յերկնայանգետ և գերահռ[չակ] սուրբ ուխտս Սանահին, առ դռան մաւր լուսոյ Աստուածածնիս, կամացկութեամբ եղբարցս Ներսէս փիլիսոփայի և այլ միաբանիցս։

Արդ, ես Տէրունականս, հողս և մոխիրս, ստացայ զսուրբ Աւետարանս յիշատակ ինձ՝ հոգոյ [ի]մոյ և ծնողաց իմոց, հօր իմոյ՝ Եռիլին և մօր իմոյ՝ ‖ (էջ 602) Թամրա խաթունին, եղբարց իմոց և քերց և ամենայն յարեան մերձաւորաց, որք ի Քրիստոս են հանգուցեալ։ Վասն որոյ յերեսանկեալ աղաչեմ զհամայնգումար դասրդ քահանայից, որք օգտիք ի սմանէ և լուսաւորիք սովաւ, յիշեցէք ի Քրիստոս՝ զիս զբազմամեղս զՏէրունական, որ ստացա զսա յիշատակ ինձ ի վայելումն, զի մեծ յուսով ստացա և սիրովն Քրիստոսի գրեցաւ և

*ծաղկեցաւ [չ]ոյժ տաժանմամբ, այլ և բարերարն Աստուած տացէ զիւր առատ ողորմութիւնն մեզ և ձեզ։*

*Դարձեալ յերես անկեալ աղաչեմ զհա[ն]դիպողքդ աստուածախաւս բուրաստանիս, զի սահման է զգալի աչացս՝ նաեւ ի գեղեցիկ իր. լուսաւորի միտքն և իմաստանա,քաղցրանա կամքն և ուրախանայ, ապա աւխորժի ամենայն զգայ ||(էջ 603)արանքն և տայ ի լեզուն զշահարար սերմն և լսելիս բազմաց և բերէ զպտուղ անուշ և արդիւնարար, այսինքն զբարի յիշումն և զԱստուածողորմայն ի խորոց սրտէ։*

*Արդ, որք նախք ի ծաղկազարդ և հոգելից դրախտս, յիշեսջիք առ հասարակ զգրեալքս ի սմա ի սուրբ աղաւթս ձեր, և ձեզ յիշողացդ և մեզ յիշելոցս ողորմի Քրիստոս Աստուած, և նմա փառք յաւիտեանս, ամէն։*

## Սաղկոդի

էջ 287. *ԶՅոհաննէս մեղապարտ նկարիչ աղաչեմ յիշել ի մեղաց թողութիւն, վասն սիրոյն Քրիստոսի։*

## Հետագայի

ա. էջ 2. *Ես* Տէր Պետրոս *թողի զԱւետարանս ի հալալ արդեանց իմոց՝ յիշատակ ինձ և ծնողաց իմոց, (նույն ձեռքով տողամէջ՝ «և կողակցին իմոյ* Նիկարին») *և որդոցն իմոյ՝* Ղուկասին, Հայկազին, Գրիգորին, Անտոնին, *և դստերացն իմոց՝* Սառային, Եղիսաբեթին, *և հարսին իմոյ՝* Սիրայխաթունին, Մարիանին, *և թոռանց իմոց՝* Պետրոսին, Մէլքոնին, Քասպարին, Անտոնին, *և միւս այլ* Պետրոսին *և դստերաց նորին՝* Մարիանին, Խաթունճանին, Յարուխին, Սալվինազին, *և այլ ամենայն յար[եան] մերձաւորաց իմոց՝ կենդանեաց և հանգուցելոցն, ամէն։*

*Այլ ոչ ով դաւի չիլնի ո՛չ իմոց և ո՛չ աւտարաց, և թէ քահանայ լինի ազգի իմոյ՝ պաշտելոյ զսուրբ Աւետարանս, և եթէ ոչ, յիշատակ տանն իմոյ մնասցէ մինչև ի խորին ծերութիւնն։ Աստուած ողորմի* Տէր Տէրունականին, *որ գրեաց զսուրբ Աւետարանս և ծախեաց մեզ, ամէն։*

*Եւ զիս՝ անարժան* Մկրտիչս *մի բերան յիշէք, գրող յիշատակարանիս։*

բ. էջ 603. *Արդ, աղաչեմք յիշել ի* Տէր *կրկին ստացող սուրբ Աւետարանիս* զԱմիրն, *որ ստացաւ զսա ի հալալ արդեան իւրոյ՝ յիշատակ հոգոյ և մարմնոյ ի ամենայն արեան մերձաւորաց, զի փափաքէի և առի, կարաւտ էի և տեսի, ծարաւ էի... (շար. էջ 604, անընթեռնելի)։*

գ. էջ 1. *Զայս գրչայ Աւետարանս առի* Տէր Մինասեան *տապաղ* Կարապետենց /// *մենէ, որ փրրօթեսթանտ է. ի[նձ] ծախեցին, արժէքըն հինգ ղուրուշով,* Շեկոյ *անպիտանիս։ Վրկայ բանիս սրբազան* Յակոբ *վարդապետ և* Տէր Կարապետ, Տէր Յակոբեան *և* Առուսեան Յօհաննէս. *հազար ութ հարիւր վաթսուն և մէկ, մարտի 25ին.* Տիկրանակերտ *(ստորագր.)* Յակոբ վարդապետ Տիգրանակերտցի *(երկու կնքադրոշմ)։*

էջ 6. *Ընծայի Աւետարանս* Սուրբ Կիրակոս *եկեղեցւոյն* Տիկրանակերտի *ի* Շեկոյ *ձայնաւոր վարժապետէ։*

էջ 174. *Ընծայի սուրբ Աւետարանս* Սուրբ Սարգիս *եկեղեցւոյ ձայնաւոր*

*վարժապետ Ծեկոյ գրքէ ի գաւառ Սուրբ Կիրակոս եկեղեցոյ. 1881 օգոստոս 15* Տիրանակերտ *(նման՝ էջ 283):*

12

ԱՒԵՏԱՐԱՆ

*(Լոս Անջելոս, Արշակ Տիգրանյան, № 3)*

Վասպուրական ՋԺԱ.—1462

Գրիչ՝ *Մկրտիչ քհ.:* Ստացող՝ *Հովհաննես կր.:* Թերթ՝ *344:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *17,5×25,5:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *21:* Մանրանկարչություն—*Ծննդաբանություն՝ 1բ, Ավետում և Աստվածահայր Հովսեփ՝ 2ա, Մոգերի երկրպագությունը՝ 2բ, Քառասնօրյա գալուստ՝ 3ա, Մկրտություն՝ 3բ, Պայծառակերպություն՝ 4ա, Հարսանիք Կանայում՝ 4բ, Անդամալույծի բժշկությունը և Ղազարոսի հարությունը՝ 5ա, Մուտք Երուսաղեմ՝ 5բ, Վերնատուն՝ 6ա, Մատնություն՝ 6բ, Խաչելություն և Թաղում՝ 7ա, Դժոխքի ավերումը՝ 7բ, Հարություն՝ 8ա, Համբարձում՝ 8բ, Հոգեգալուստ՝ 9ա, Ղազարոս Աբրահամի գոգում և Մեծատունը տապակի մեջ՝ 9բ, Քրիստոսը քառակերպյան աթոռի վրա և Ավետարանի պատվիրատու Հովհաննես կրոնավորը իր հոր՝ Տեր Մարտիրոսի հետ՝ 10ա:* Խորան՝ *10 (Թուղթ Եվսեբի՝ 10բ, 11ա, Համաբարբառ կանոններ՝ 11բ, 12ա, 12բ, 13ա, 13բ, 14ա, 14բ, 15ա): Մարկոս՝ 105բ, Ղուկաս՝ 166բ, Հովհաննես և Պրոխորոն՝ 267բ:* Կիսախորան՝ *16ա, 106ա, 167ա, 268ա:* Լուսանցազարդ՝ *բուսական, կենդանական:* Զարդագիր՝ *թռչնագիր, հանգուցագիր:* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ:* Պահպանակ՝ *մագաղաթ, մեկական թերթ սկզբից և վերջից՝ «Պատմություն Յովասափի և Բարաղամու», Ժ—ԺԱ դդ.:* Վիճակ՝ *բավարար:*

Ծնր. *1972 հունվարի 8-ին Լոս Անջելոսում տողերիս գրողը այս ձեռագիրը նվեր ստացավ Մաշտոցի անվան Մատենադարանի համար (№ 10521):*

Հիշատակարան

Գրչի

*104բ. Քրիստոս Աստուած, քո սուրբ աւետարանչիս բարեխաւսութեամբ ողորմեա ստացողի սուրբ Աւետարանիս՝ Յովաննէս կրաւնաւորին, և ծնաւղացն՝* Մարտիրոս *քահանային, և մօրն || (105ա), և ամենայն արեան մերձաւորացն իւրոց, և ինձ մեղապարտ գծողիս՝* Մկր[տ]չի, *և ծնաւղացն իմոց, և թող զմեղս մեր ամենեցուն, և այնոցիկ, որ ասեն զամէն:*

*166ա. Զստացող սուրբ Աւետարանիս՝* զՅովհանէս *կրաւնաւորն, որ եռափափագ սիրով ստացաւ զսա՝ զԱւետարանս աստուածախաւս, ի յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց և ամենայն արեան մերձաւորաց իւրոց:*

*Արդ, որք հանդիպիք սմա կարդալով կամ աւրինակելով, յիշեցէք զսոսա անմոռաց յիշմամբ ի սուրբ աղաւթս ձեր և մեղաց թողութիւն խնդրեցէք ի*

Քրիստոսէ, և Աստուած, որ առատն է ի տուրս բարեաց, ձեզ և մեզ առ հասարակ ողորմեսցի. ամէն:

341ա. Փառք... ‖ (342ա)... [և]ւ սա [տե]սեալ զսորայս անճառ փրկագործութեան խորհուրդ, ամն Յովհաննէս կրաւնաւոր, զոր ի վաղուց հետէ ցանկացեալ եղեալ ստացուածախաւս սուրբ մատենիս, և ետ գրել զսայ, յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղացն՝ Մարտիրոս քահանային և Աղուբին, և ամենայն արեան մերձաւորացն և երախտաւորացն:

Եւ արդ, ես յետինս ի քահանայս և անարժանիս ի մանկունս եկեղեցւոյ՝ Մկրտիչ քահանայ, հրաման առեալ ի պատուիրանագիր առաքելական բանէն, որ ասէ. Յոր կոչումն կոչեցար՝ ի նմին կացջիր...

342բ. ...Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս այս ձեռամբ սուտանուն գրչիս՝ Մկր[տ]չի, անիմաստ և անախմար: Եւ իմ անընդունակ գոլով յարուեստ գրչութեան և բազում մեղաց ցնորիւք պաշարեալ, այլ ըստ կարի մերում, զոր պարգ[և]եաց մեզ մարդասէր հոգին, բազում աշխատասիրեալ իմ սմայ, գրեցի անարժան ձեռաւք իմովք յ[ը]նտիր և ի սուղ[գ] աւրինակէ, կենաւք տառապանաւք և բազում պանդխտութեամբ, նեղեալ յերկեւի և յանհերեւոյթ թշնամեաց, ըստ նմանութեան կամ ծովու, որ յալեաց տատանեալ: Իսկ գրեցաւ սուրբ աւետաբեր Աւետարանս ի մեծ թուականութեանս Հայոց ՋԺԱ (1462) ի կաթողիկո‖... (շար. էջերը թափված):

## Հետագայի

ա. 1բ. (Նկարի շրջանակի ստորին մասում կապույտ խորքի վրա սպիտակ երկաթագրով, մասամբ անընթեռնլի) ՋՂ /// եւ զծնաւղսն իւր յիշեց[էք ի] Ք[րիստո]ս:

բ. 105ա. (Այլ ձեռագրով, բոլորգիր, ԺԸ դար) Յիշեցէք ի Քրիստոս զՂումրի խարուն. զԹուրւանդէն և զԱվրան և զԹարսէն և Աստուած ողորմի ասացէք սոցա. ամէն:

գ. 5ա. (Նկարի լուսանցքում) Ես Տէր Պ[ե]տրոս Բ[ա]ղէշեցի, ո[ր] կոչի որդի[ի] Տէր Սարգ[ս]ի, որ եկա[յ] զրոկան ժողովք Մայրաքորու Սուրբ Կարապետին, որ հանդիպայ այս Աւետարանիս թւին ՌՄԾԴ (1805)-ին:

դ. 266բ. Զայս Կարմիր Աւետարանս գնեցի Առաջցի Յարութիւն վարդապետէն ի Բաղէշ Սիմէօնս Սասունցի Դաւթեան: 1873 թիւ Փրկչի, հոկ. 10:

## 13

## ՇԱՐԱԿՆՈՑ

(Սան-Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 6)

ԺԵ—XV

Գրիչ՝ Ղուկաս: Թերթ՝ 474: Նյութ՝ թուղթ: Մեծություն՝ 7,5×9,5: Գրություն՝ միասյուն: Գիր՝ բոլորգիր: Տող՝ 17: Մանրանկարչություն—ճակատազարդ՝ 72ա, 138բ, 175ա, 371բ, 399բ, 433բ: Լուսանցազարդ՝ բուսական: Զար-

*դագիր՝ թռչնագիր, հանգուցագիր: Կազմ՝ կաշեպատ տախտակ, դրոշմազարդ: Վիճակ՝ քայքայված, ցեցակեր, սկզբից, միջից և վերջից պակասավոր:*

*Ծնր. Ձեռագիրս 1972 թ. հունվարին Սան-Ֆրանցիսկոյում տողերիս գրողի միջոցով Ն. Մարտիկյանը նվիրեց Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10526):*

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

Գրչի

*300բ. Զմեղաւոր և զանարժան Ղուկաս յիշեցէք:*

14

## ՇԱՐԱԿՆՈՑ

*(Ֆրեզնո, Սուրբ Երրորդութիւն Մայր եկեղեցի, № 4)*

ԺԵ—XV

*Հիշատակարան չունի:*

15

## ԳՐԻԳՈՐԻ ՏԱԹԵՒԱՑՒՈՅ ԼՈՒԾՄՈՒՆՔ ԴԺՈՒԱՐԻՄԱՑ ԲԱՆԻՑ Ի ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԳՐՈՑՆ ՅՈԲԱՅ

*(Ֆրեզնո, Սուրբ Երրորդութիւն մայր եկեղեցի, № 5)*

ԺԵ—XV

Գրիչ՝ *Սարգիս:*

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

Գրիգոր Տաթևացու

*/// [Եւ] ժողովողն մեկնութեան[ս է]* Վանական *վարդապետն՝ աշակերտ* Մխիթար *վարդապետի, որ* Գոշ *անուանի, և է սա վարդապետն* Վարդանայ, *և* Վարդանն՝ Ներսէսի, *և նա՝* Եսայեայ *վարդապետին, որոց յիշատակն աւրհնութեամբ եղիցի. ամէն:*

*[Ա]րդ, ես վերջինս ի ծնունդս եկեղեցւոյ* Գրիգոր *մականուն խնդրող բանի, որ ի վաղուց հետէ փափաքէի բոլոր Մեկնութեան Յոբայ: Եւ ի թուականութեանս Հայոց ՊԾԷ (1408) ամի եկեալ մեր յերկիրս* Քաջբերունի *և ձմերեալ ի հրեշտակաբնակ վանքս* Մեծոփայ, *ի սպասու գամբարանաց վարժապետացն սրբոց: Եւ ընթերցմամբ հաւաքեցի զդժուարալոյծ բանս Յոբայ և զմեկնչաց նորա, այլ և սակաւ ինչ լուծումն* Արիստակիսի *և* Գէորգեա *ի խրատս դըշու-*

թեան, ընդ նմին և զՔաղուածոյ մեկնութեանն Յովհաննու աւետարանչի, և ընծայեցի ի պա[տիւ] սուրբ տեղւոյս ուսում[նաս]էր անձանց՝ ուղղադաւան մտաց [և] ի գլուխս բաժանելով վասն մտաւոր տեսութեան և զարդ ուսման ի պէտս բնմաստացութեան և ի խրատս զրուցատրութեան։

Արդ, եթէ գտցի ինչ ի սմա ըստ հաճոյից խնդրողաց՝ Տեառն շնորհ[ք և թէ] ոչ՝ այնպէս շնորհք և պակասն [փոքր]ընկալ անութոյս մերոյ ն[երես]ցի, որ և լուսաւոր վարդապետին մերոյ Յովհաննէ Որոտնեցոյ ի սմա մասն բարեաց յիշեալ եղիցի։ Որ և մ[եզ] յուսողաց և ձեզ յիշողաց ողորմութիւն Տեառն հասարակեցի։

Այլ և աղաչեմ զմտերիմ գաղափարաւղս, գրել զա[կ]աւ յիշատակ մեր, և զու[ք] գրեալ լիջիք ի գիրն կենացն յափտենից. ամէն։ Եղիցի, եղիցի։

Գրչի

Այլ և կրկին աղաչեմ յիշեցէք ընդ վերոյ ասացեալն զբազմամեղ գրիչս զՍարգիս և զծնողն իմ և խոշորութեան անմեղագիր լերուք, զի կար մեր այս էր։

16

ԱՒԵՏԱՐԱՆ

(Նյու-Յորք, Ալիս Գավուքչյան)

ԺԵ—XV

Գրիչ՝ Զաքարիա։ Ծաղկող՝ Թումայ։ Նյութ՝ թուղթ։ Մեծություն՝ 21,5×31։ Գրություն՝ երկսյուն։ Գիր՝ բոլորգիր։ Տող՝ 21։ Մանրանկարչություն—Քրիստոսը քառակերպյան աթոռի վրա՝ 2բ, Իսահակի զոհաբերությունը՝ 3ա, Ավետում՝ 3բ, Ծնունդ՝ 4ա, Մոգերի երկրպագությունը՝ 4բ, Քառասունօրյա գալուստ՝ 5ա, Կոտորումն մանկանց և Մկրտություն՝ 5բ, Հարսանիք Կանայում՝ 6ա, Նկանակների բազմումը՝ 6բ, Անդամալույծների բուժումը՝ 7ա, Պայծառակերպություն և Ղազարոսի հարությունը՝ 7բ, Մուտք Երուսաղեմ՝ 8ա, Ոտնլվա և Մատնություն՝ 8բ, Քրիստոսը Պիղատոսի ատյանում՝ 9ա, Խաչելություն՝ 9բ, Դժոխքի ավերումը և Հարություն՝ 10ա, Համբարձում՝ 10բ, Հոգեգալուստ՝ 11ա, Սարգիս և Թեոդորոս զորավարներ՝ 11բ։ Խորան՝ 10 (Թուղթ Եվսեբի առ Կարպիանոս՝ 12բ, 13ա, Համաբարբառ կանոններ՝ 13բ, 14ա, 14բ, 15ա, 15բ, 16ա, 16բ, 17ա)։ Մատթեոս՝ 18բ, Մարկոս՝ 95բ, Ղուկաս՝ 146բ, Հովհաննես և Պրոխորոն՝ 217բ։ Կիսախորան՝ 19ա, 96ա, 147ա, 218ա։ Կազմ՝ կաշեպատ տախտակ դրոշմազարդ. Ա փեղկին մետաղյա 5 խաչեր, մեկը կապույտ ակով։ Խաչերի վրա՝ «Աղայրէգի», «Ալիխան» «Յուխան», «Ցռանգ[ուլ]», «Թրկէլդյ (՞)։ Պահպանակ՝ մագաղաթյա, երկուական թերթ սկզբից և վերջից, մասն Ավետարանի, Ժ—ԺԱ դդ.։ Վիճակ՝ բավարար, միայն կողի կաշին պատռված։

Ծնթ. 1972 թ. հունվարի 23-ին Նյու-Յորքում տողերիս գրողը այս ձեռագիրը նվեր ստացավ Մաշտոցի անվան Մատենադարանի համար (№ 10522)։

## Հիշատակարան

### Գրչի

*285բ. Փառք... որ տրամադրեաց զմատեանս վերջացեալ տկար ոգոյ՝ Զաքարոյ սուտանուն կրօնաւոր, գրեալ և կարգեալ ըղձաւս երախտեաց աստուածազարդ սքանչելեացն, զոր ճշմարիտ և աստուածաբան միածին Որդին Աստուծոյ Յիսուս Քրիստոս ի վախճան աւուրցս այսոցիկ կատարեաց զնշանս և զարուեստս, որպէս զի որք ընթերցին, ի միտ ածցին, թէ նոյն Տէր է, որ Մովսէսի հրամայեաց||... (շար. էջերը թափված)։*

### Ծաղկողի

*16բ (խորանի վերին հիծանի վրա) ԶԹումա ծաղկողս յիշեցէք ի Քրիստոս աղաչեմ։*

### Հետագայի

ա. *286ա. Ով լուսերամ դասք քահանայից և մանկունք սուրբ եկեղեցոյ, յորժամ հանդիպիք սուրբ Աւետարանիս, ասացէք Աստուած-ողորմի* Վարդանին *և ծնողացն՝* Արեխամուն *և* Գօզալին, *կողակցուն՝* Մարանին, *որդոյն՝* Յովանէսին, Յոհանիսին *և* Մկրտչին, *դստերացն՝* Սինուբարին, Մարգարտին, Ալթունին, *հարսներաց՝* Զամանին, Գաֆարին, Հռոմսիմին, Արեխամուն. Մանուկին, Մափիխանին. *ասացէք Աստուած ողորմի, որ ետացաւ զսուրբ Աւետարան ի հալալ վաստակոց իւրոց, ասացէք Աստուած-ողորմի, Աստուած ձեզ ողորմեսցի. ամէն։*

*Արդ, ես՝* Վարդանի *որդի* Յովանէս *և եղբարն իմ՝* Յոհան *և* Մկրտիչն *զնեցինք զսուրբ Աւետարանս ի հալալ վաստակոց մերոց՝ յիշատակ հոգոց մերոց և ծնողաց մերոց՝* Վարդանին *և* Մարանին, *և ծնողաց նորին՝* Փանոսին *և* Խռոմին, *և* Տէր Յոհան *սրբասէր քահանային, որ կամակից եղև այս բարի բանին, թվին ՌՃԿԲ (1713)։*

բ. *287ա. Փառք... Զվերջին զստացողս սուրբ Աւետարանիս՝ բարեմիտ և հաւատարիմ աղա* Միքայէլ *և կողակիցն իւր* Թուրւանդէն *առին զսուրբ և փրկագործ Աւետարանն հրաշալի և բժշկարար իւրեանց հոգոյն, յալալ վաստակոց իւրոց, անջինջ յիշատակ իւրեանց հոգոյն և ծնողացն իւրոց՝ աղա* Բաղդասարին. *կողակցուն՝* Եղիսաբեթին, *եղբօրն՝* Յակոբին, *քուրոջ՝* Թումարեթին *և հանգուցելոց նոցին, ամէն։*

*Դարձեալ կրկին անգամ յիշեցէք ի Քրիստոս և Աստուած ողորմի ասացէք աղա* Միքայէլին. *կողակցուն՝* Թուրվանդին, *հօրն՝* Տէր Պետրոսին, *մօրն՝* Զմրուբին, *եղբօրն՝* Յովաս/ա/փին. *ամէն. որդոցն՝* Բաղդասարին, *կողակցուն՝* Էրեմսիմին, Յարութենին, *կողակցուն՝* Եղիսին, Մուրադխանին, *կողակցուն՝* Գարիանին, Գուլամիրին, *կողակցուն՝* Զարիֆին || *(287բ)* Աւետին, *կողակցուն... (անվան տեղը բաց),* Ալիխանին *և հանգուցեալ որդոց՝* Թումաջանին, Ասլիխանին. *ամէն։*

*Դարձեալ կրկին անգամ աղաչեմք զսրբութիւնդ ձեր, ով լուսեղամ դասք քահանայից և մանկունք սուրբ եկեղեցոյ և առ հասարակ ժողովուրդք, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր, լի սրտիւ և բոլոր հաւատով Աստուած-ողորմի ասացէք աղա* Բաղդասարին, *կողակցուն՝* Եղիսաբեթին, *որդոյն՝ աղա* Միքայէլին, *կողա[կ]ցուն՝* Թուրվանդին, Տէր Պետրոսին, *կող[ակ]ցուն՝* Զմրուքին, *որդոյն՝* Յովասափին, Բաղդասարին, Մուրադխանին, Եղիսին, Զարիֆին, Աւետին, Ասլիխանին, Աստ[ու]ածատուրին, Թումին, Աղուփին, *մեծին և փոք[ր]ին, առ հասարակ ամենեցուն. ամէն:*

*Դարձեալ Աստուած ողորմի ասացէք յիշատակ գրողաց հօգոյն, Աստուած ողորմեսցի փր միւսանգամ գալստեանն և ի յահեղ դատաստանին. ամէն:*

*Թվին ՌՃՁԳ (1734)-ին. ամէն:*

Գրչափորձ *(հայերեն և հայատառ թուրքերեն). 1ա, 2ա, 286բ:*

17

ՄԱՇՏՈՑ

*(Չիկագո, Օսկան և Լուսին Խաչիկյաններ)*

ՋԾԳ—1504

Գրիչ՝ *Յակոբ եպս., Մկրտիչ:* Ստացող՝ *Գօհանի Ասլան:* Թերթ՝ *131:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *18×13,5:* Գրություն՝ *միասյուն:* Տող՝ *15—18:* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ:* Պահպանակ՝ *մագաղաթ, երկուական թերթ սկզբից և վերջից, Ժ—ԺԱ դդ., մասն Մատթեոսի Ավետարանի:* Վիճակ՝ *բավարար. պահպանակները վնասված:*

Տեր. *Ձեռագիրը 1971 թ. դեկտեմբերին տողերիս գրողի միջոցով Խաչիկյանները նվիրեցին Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10519):*

Հիշատակարան

Գրչի

*115ա. Որ ողորմի մեղաւոր* Մկրտչիս *և ամենայն երախտաւորաց մեր և ծնողացն. ամէն:*

*130բ. Ով ամենաբարի* Տէր *Յիսուս, քո կամաւոր խոնարհութեամբդ ողորմեա մեղաւոր և անարժան գրչիս և ամենայն երախտաւորաց մեր և արեան մերձաւորաց մերոց, և թղթիս կոկողի՝ մահդասի* Տէր Ղազարի *և արեան մերձաւորացն:*

*Գրեցաւ ի թվականիս ՋԾԳ (1504), և խոշորութեանս անմեղադիր լերուք, զի աւուրք ձմեռնային էր, բայց վասն թախանձանաց եղբաւր գրեցաւ յայս դնդակ աւուրքս, որ է յանվար ի ԺԸ (18), և Քրիստոսի փառք յաւիտեան:*

*131ա. Փառք... Գրեցաւ սուրբ Մաշտոցս ձեռամբ Բ (2) գրչաց՝* Յակոբ

*եպիսկոպոսի և Մկրտիչ դպրի, ի խնդրոյ վարպետ Ասլանին պօ[ԽաՃ]ուն և իւր կենակցին՝ Փաշախաթունին և ամենայն զարմիցն և զաւակացն:*

*Արդ, յերես անկեալ աղաչեմ զամենեսեան, որք հանդիպիք սուրբ տառիս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղաւթս ձեր զստացաւղ սորա՝ զպօաճի Ասլանն և զկենակից նորին՝ զՓաշախաթունն, և ձեզ յիշողացդ և մեզ առ հասարակ ողորմեսցի Քրիստոս Աստուածն մեր. ամէն:*

Հետագայի

ա. *106բ. (Նոտրգիր). Այս գիրս* Բայվցոնց *մահտեսի* Թումանեան *որդի տիրացու* Տօնապետս ՌՄԼ. *(1781) գիրեց, որ (=ով) որ կանդանէ (=կարդանէ)՝ օղորմիս հանէ:*

*115ա.* Բալֆվցոնց *մահտեսի* Գեվորքին *որդին* Օհանի *այս սընըն* ՌՄԻԹ *(1780) Վարդեվառին կիրակէն եղեալ է:*

*115բ. Գիրս գրեալըն* ՌՄԼ. *(1781): Գիրըս գրե[ալ]* Բալֆ[վ]ցոնց *մահտեսի* Օվակմին *թօռըն՝ մահտեսի* Թումանանին *որդին տիրացու* Տօնապետս *գրեց: Այս գիրքըս տիրացու* Օհանի ‖ *(116ա) որդի մահտեսի* Գեվորքին *է. իւր որդի [*Օհա*]նըն եղեր է վառդէվառին բարկէառին [կիրակ]էն: Այս գիրըս եղեալ սընըն* ՌՄԻԹ *(1780): Այս է սընըն* ՌՄԻԹ *(1780):*

բ. *121բ. (Նոտրգիր, այլ) Յիշատակ այս գիրս տիրացու* Թումանանին, *տիրացու* Մարտիրոսին, *տիրացու* ‖ *(122ա)* Գրիգորին, *տիրացու* Եսօֆին, *տիրացու* Կասպարին, *ով որ կարդանը՝ ողորմիս տաէ:*

18

*ԺՈՂՈՎԱԾՈՒ**

*(Ուեսթ-Հարթֆորդ, Քընեթիքեթ, օր. Ժոզեֆին Պարթ)*

Եւֆառա գյուղ, Կեսարիա ՌԹ—1560

Գրիչ՝ *Հակոբ քհ. Սարգսյան: էջ՝ 567:* Մանրանկարչություն—*«Միջորակ և որոշ չափով գունաթափ»:* Վինակ՝ *լավ:*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. *էջ 1—146 Նախերգան և Մեկնութիւն Արիստոտելի Ստորոգութեանցն՝ արարեալ Դաւթի անյաղթ փիլիսոփայի:*

բ. *էջ 146—252 Յաղագս մեկնութեան Պերի արմենի[աս]:*

---

* *Այս ձեռագրի նկարագրությունը, որը կատարել է Տեր Մեսրոպ ծ. վրդ. Սեմերճյանը, և Միրատ Գունդասարքի հիշատակարանի լուսապատճենը մեզ է տրամադրել պրոֆ. Ա. Ալպոյաճյանը (Նյու Ջերզի): Տե՛ս Մաշտոցյան Մատենադարան, անտիպ ձեռագրացուցակներ № 127:*

գ. էջ 253—281 Արիստոտելի իմաստասիրի Յաղագս ամենայն աշխարհի։

դ. էջ 282—321 (Բովանդակությունը նշված չէ Մ. ծ. վրդ. Սեմերճյանի նկարագրության մեջ)։

ե. էջ 321—462 Երանելույն Գրիգորի Նիւսացւոյ ասացեալ Վասն բնութեան մարդոյ։

զ. էջ 463—552 Գրիգորի եպիսկոպոսի՝ եղբօր Բարսղի Տեսութիւն ի մարդոյ կազմութիւն։

է. էջ 552—560 Հերմա Եռամեծի Առ Ասկղեպիոս (Սահմանք).

ը. էջ 562—567 (Այլ գրչի կողմից ընդօրինակված Սմբատ Թագավորի հիշատակարանը—տե՛ս ստորև)։

## Հիշատակարան

### Հատված

«...ի քաղաքն Կեսարիայ և ի գիւղն յեւՃառայ, ընդ հովանեաւ Սրբոյ Կարապետի ... սուրբ վանացն և ձեռամբ հանճարեղագոյն Տէր Յակոբ շնորհալի քահանայի»։

(562) Յաղագս յիշատակարանին ի վերջ մատենի այնորիկ յորմէ մեր զգիրքս զայս օրինակեցաք, զոր բարեպաշտ Թագաւորն Սմբատ ոտանաւոր չափմամբ շարադրեալ էր այսպէս.

Ո՛վ հանճարեղք իմաստ բանիս
Եւ մակացուք լոյս արհեստիս,
Մատադրութեամբ միտ դիք բանիս՝
Անյաղթ գիտուն վարդապետիս,
Որ զընդհանուրն առեալ գոյիս,
Դնեալ բաշխեաց մարդկան ազգիս՝
Իբր զընդհանուր զկենդանիս,
Բաժանեաց ի ձիս և ի ջորիս,
Զորս հոմանւամբք անէ տեսլիս,
Իսկ բաշխելով զանուանս գոյիս՝
Միաւորէ դարձեալ ի միս։
Եւ յարանւամբք զոլ նմանիս,
Որպէս յարի ազգէն արիս,
Կամ ի միոյն նոյնն իսկ առ միս։
Արդ, ո՞նց պատմեմ զո[յ]ժն զբանիս,
Երբ կարի խիստ կարճ է տեղիս։
Բայց թէ հազար կարճեալ բանիս,
Հարկն կոչէ զիս այս տեղիս՝
Յիշել զմայրն ամէն գոյիս
Եւ զպատճառն ծննդականիս,
Զգոյացութիւնն որով լինիմք
Եւ գոյանամք ի յաշխարհիս։
(563) Եւ զինն էքին ընկերք սորին,
Որ սա զլուխ է տասնէկիս,
Զորս անուանեաց Արիստոտէլ

Ստորգութիւնք տասն ևևխ.
Եւ զոր գրեաց Արիստոտէլ
Նամակ և գիր զարմանալիս
Առ Աղեքսանդր իւր աշակերտ
Տիեզերակալ երեք կուսիս,
Երբ հեռացեալ էր ի նմանէ
Առնուլ չորս կողմն աշխարհիս,
Զորս ընդհանրեաց ի քիչ տեղիս՝
Զգիտութիւն անճառելիս
Եւ ժողովեաց ի միասին
Զիմանալիս և զգալիս,
Ընթերցիք և զարմացիք,
Որք ի խնդիր լինիք բանիս,
Զմակագիր բնութեան ազգիս.
Գրիգորի Նիւսայ վարդապետիս,
Որ ժողովեալ ի մի տեղիս,
Յարմարեցի ի պատեհիս՝
Եւ մեղաւորս և ողբալիս,
Տրուպ գծուրս և եղկելիս,
Սմբատ անուն իմ հայկազնիս,
Տէր և պարոն Պապեռօնիս
Եղբայր Հէթմոյ թագաւորիս
Եւ սպասապետ հայոց զնդիս։
Նոյն և շինող ի բնէ նորայ
Զանտառ զգեակն անմարտելիս,
(564) Որ ըստ իմոյ անուանս եղի
Սմբատակլայ քաջ ամրոցիս։
Զորս աղաչեմ զամենեսին,
Որք ընթերցող լինիք գրիս,
Խնդրել պա[ր]գևս ի Քրիստոսէ
Զթողութիւն մեղաւորիս,
Եւ պարգևօղն տատաձիր
Տրիտուր բարեաց այս է բարիս,
Ի հայ ազգիս ի թվականիս
Ի վեցհարիւր իննիսուն երրորդիս (տողամեջ՝
«693»)
Գրեցի վաթար ձեռօքս
Անլար ըզգիր յիշատակիս։

Եւ աստուծոյ մեծին հզօրին, անմահին, միայն կարողին, ընդհանուր գոյից արարողին և լոյս ճշմարիտ հայրենի տէր և յետմնաց մնացողին, զի սուտ և խաբեբայ է ասել այլ ումեք ապրել կամ վայելել և կամ ձոխալ ի վայելչութիւնս աշխարհի, բայց միայն ի նմանէ, այլ մահկանացուս պարտ է ամենայնի խոկալ զմեռանիլն ըստ գրոյն և տեկանաւն և գործնականաւն զարդարել զբարս և զմշտենջենաւորին առնակից լինել, որում պարգևողին փառք յաւիտեանս. ամէն։

Մնք. Սմբատ Գունդստաբլի այս հիշատակարանը այլ ձեռագրից հատվածաբար (տողք՝ 41—48, 49—52 և 59—62) հրատարակել է Ղ. Ալիշանը նախ «Սիսուանում» (1885, էջ 71 և 76), այնուհետև ամբողջապես՝ «Հայապատումում» (1901, էջ 481—482), իսկ Գ. Հովսեփյանը իր «Յիշատակարանք ձեռագրացում» (1951, էջ 954) բերել է դրա մի այլ տարբերակը, վերցնելով Գրիգոր Նյուսացու «Յաղագս բնութեան» և Արիստոտելի «Ստորոգութիւնք» աշխատությունները ընդգրկող մի ձեռագիր մատյանից, որը Սմբատ Գունդստաբլի պատվերով ընդօրինակվել է 1239—1244 թթ.:

Հիշատակարանը այստեղ կրկին հրապարակում ենք ամբողջությամբ, որովհետև սա ևս մի նոր տարբերակ է և ունի բազմաթիվ տարընթերցումներ:

19

ԱՒԵՏԱՐԱՆ

(Ֆրեզնո, Սուրբ Երրորդություն Մայր եկեղեցի, № 3)

ՌԻԶ—1577

Հիշատակարան

Գրչի

Փառք... Շնորհիւ Տեառն սկսայ և խնամաւք նորին կատարեցի եռափափաք սիրով հոգւ... (հաջորդ թերթն ընկած) սորին հեք և փանաքս, և ոսկար անձամ[ք] կատարեցի զաւած[ե]ալ մեղաւք Տէր Ուրիանոս (՞), մեծ Տէր Թումայ, միջնեկ Տէր Թումէն, փոքր Տէր Թումայ, Տէր Դանիէլ, Վարդանէս, Մկրտիչ, Մազլում, Աւանէս, Նաւասարդ, Սարգիսին, Նաւասարդին, Մարխանին,Անթառանին, Եղիսաբեթին, Հոռոմսիմին, Մարգարիտին, Փանոսին, Սիմէոնին, Մարտիրոսին և ամենայն ար[ե]ան մերձաւորեաց կեն[դ]ան[ե]աց և ննջեցելոց յիշեցէք առ Քրիստոս, և Աստուած զձեզ յիշէ իւր միւսանգամ գալստեան. ամէն:

Յետոյ գրեցօ սակաւ յիշատակարանս. թվին ՌԻԶ (1577) էր. անմեղադիր լերուք, զի կար մեր այս է:

Հետագայի

ա. Արդ, վերջին ըստացող սուրբ Աւետարան[ի]ս հեզահոգի և բարէմիտ աստուածասէր Ծատուրին և ծնողացն իմոց՝ Դանէլին և մայրն՝ Շահիփարին և կողակցին՝ Հուրին և եղբօրն իմ՝ Ավաքին, կողակցին՝ Հէրիքին, որդին՝ Ալահվէրտին: Դարձեալ յիշեցէք Ծատուրն, որ սուրբ Աւետարանս գերի էր անգեալ ի ձեռն տաճկաց, որ ազատեաց սայ հալալ վաստակօք՝ իւրեանն յիշատակ: Դարձեալ յիշեցէք տանուտէր Ծատուրն, կողակցին՝ Հուրին, դուստր Շնաւորն, որ առ Քրիստոս է հանգուցեալ: Դարձեալ յիշեցէք [Ե]գիկելի թոռն

Տէր Կարապետ, *որդի՝* Դանէլ, Դաւիթն, Սարգիսն, *յիշեցէք* Ավաք, *կողակցին՝* Հէրիք, *որդի՝* Ալահվէրտին:

*Դարձեալ յիշեցէք բարէմիտ* Մատուրն, *որ ետ նորոգէլ սուրբ Աւետարանս, անարժան և սուտանուն* Բարսեղ *իրիցոյ, և յուսուցիչ իմ* Սարգիս *քահանայն, որք ողորմին ասէք, ամէն: Թվին ՌՃՀԶ (1727) նորոգեցաւ ի գուղ, որ կոչի* Պարսումէցիք: *Ով որ ծախի կամ կրաւի սուրբ Աւետարանս ԳճԺԸ (318) հայրապետաց նզովեալ լինի, Ուզայի մասնակից լինի:*

*Ո՞վ եղբայրք,* Սարու Մուստաֆայ փաշէն, *որ* Դանեայ *առաւ թվին ՌՃՀԳ (1724) էր:*

*բ. (Շեղագիր) Ո՞վ եղբայրք, երէք թուխտ կարթայ այս կողմից, թիւն կու խմանաք. որ է թիւն 1026 թիւն (1577), նորոգեալ է 1196 թիւն (1747):*

20

*ԱՒԵՏԱՐԱՆ*

*(Նյու-Յորք, Արսեն և Արմանդ Փուշմաններ, № 1)*

Խնդրակատար Ս. Աստուածածնի վանք ՌԼԳ—1584

Գրիչ՝ *Հովհաննես վրդ., Ներսես աբեղա:* Ստացող՝ *Տեր* Աբրահամ: Թերթ՝ *285:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *13×18:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *21:* Մանրանկարչություն—*խորան՝ 10 (Եվսեբիոսի թղթով և Համաբարբառ կանոններով): Մատթեոս՝ 6բ, Մարկոս՝ 86բ, Ղուկաս՝ 140բ, Հովհաննես և Պրոխորոն՝ 223բ: Կիսախորան՝ 7ա, 87ա, 141ա, 224ա: Լուսանցազարդ՝ բուսական:* Զարդագիր՝ *թռչնագիր:* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ, աստառ՝ անզարդ գործվածք:* Պահպանակ՝ *սկզբում և վերջում մեկական թերթ չգրված անմշակ մագաղաթ:* Վիճակ՝ *բավարար:*

Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

Գրչի

*Փառք... Արդ, կատարեցաւ աստվածախաւս և տիեզերաքարոզ Աւետարանս ի խնդրոյ պատուական և հաւատարիմ կրօնաւորին* Տէր Աբրահամուն՝ *ի յիշատակ հոգոյ իւրոյ և ծնաւղաց իւրոց, հաւրն՝* Թումաջանին *և մօրն՝* Բեգիջանին, *եղբօրն՝* Սահակին *և կողակցին՝* Ջանազանին *և որդոց նորին՝* Տէր Յակոբին, Վարդանին, Առաքէլին, Նուրիջանին, Միրզաջանին *և այլ եղբարցն՝* Մելքիսէթին, Սարխոշին, *և զհօրեղբաւր որդիքն՝* զՏէր Յովանէս *և* զՏէր Մովսէսն, *և զջոջ մամն իւր՝* զՏալիբէն, *և այլ ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց. ամէն:*

*Եւ արդ, ես անարժան ի բարեաց գործոց, որ անուամբ եմ և էթ և ոչ արդեամբք տէր ձայնիւ բարձրացեալ երէց գոլով և հոգով կոլ[ւ]րացեալ և մտաւք մոլար, ըստ իմում տկարութեանս գրեցի զսուրբ Աւետարանս ի վանքս որ կոչի* Խնդրակատար, *ընդ հովանեաւ* Սուրբ Աստուածածնին *և այլ ամենայն սրբոցն:*

*Եւ արդ, յայսքան և յայսպիսի բարեմասնելոյս և մեծափառ սրբոյս գումար՝ բարեխօս աշխարհի և ապաւէն ապաստանի և քաւութիւն մեղուցելոց, զոր գիմեալ մեծաւ յուսով բարի արմատոյ շառաւիղն կատարեալն հաւատով և գործովք բարեաց* զՏէր Աբրահամն *կրաւնաւորն, որ ստացաւ զսուրբ Աւետարանն ի հալալ արդեանց իւր՝ յիշատակ իւր և ծնաւղացն իւրոց, հաւրն՝* Թումաջանին *և մօրն՝* Բէգիջանին, *և եղբօրն՝* Սահակին, *և կողակցին՝* Ջանազանին *և որդոց նոցին՝* Տէր Յակոբին, Վարդանին, Աւէտին, Նուրիջանին. Միրզաջանին. *և այլ եղբարցն՝* Մելքիսեթին, Սարխոշին, *և հարեղբօր որդոցն՝* Տէր Յովանիսին *և* Տէր Մովսէսին, *և ջոջ մամուն՝* Տալիթին, *և ամենայն արեան մերձաւորաց՝ կենդանեաց և հանգուցելոց, զոր Տէր մեր Յիսուս Քրիստոս ողորմեսցի նոցա և թողութիւն շնորհեսցէ մեղացն նոցա և արժանի արասցէ արքայութեան իւրոյ. ամէն։*

*Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի թվականիս Հայոց* ՌԼԳ *(1584) ձեռամբ մեղաւոր* Յովաննէս *նորաբոյս վարդապետի, որ յայսմ ամի* Եառ *զգաւազանն շնորհալի և զիս՝ զանարժանս և զմեղաւոր անպիտանս, ունայնս ի բարեաց և փարթամս ի չարեաց* զՆեռսէս *աբեղայս, որ միայն զանունս ունիմ և ոչ գործս։ Եւ որք կարդայք կամ աւրինակէք, յի բերանով Աստուած-ողորմի ասացէք ինձ* Յովհաննէս *վարդապետի և ծնօղաց իմոց, հօրն՝* Մարտիրոսին *և մօրն՝* Շահրստանին, *և եղբարցն՝* Աբրահամուն *և* Խալիփին, *և քուերցն և զամենայն արեան մերձաւորս, և զիս անարժանս* զՆեռսէս՝ *մոլորաքուերորդին նորին։*

Հետագայի

ա. 283բ. *Ողորմի Աստուած* Սախակին *և իւր կողակցին՝* Ոսկուն *և իւր որդոյն* Վա[ր]դանին, Սարգսի *և քուրոյն* Ջանայզանին, *որ զԱւետարան եղն մեր գնեց. Աստուած զուր մեղք թողնու. ամէն։*

բ. 284ա. *Այլ և վերջապէս Աստուած-ողորմի ասացէք* Նուբարին, *որ աշխատեցաւ կամ սպասաւորեաց սուրբ Աւետարանին. եւ Աստուած ողորմի ասացէք* Նուբարին, Մանուչակին, Յարութէնին. *ամէն։*

գ. 284բ. *Յիշեցէք ի Քրիստոս* զՍախակ *և* զՍառայ, Այլմայտա, զԱյլբուն, *որ ազատեաց ի գերութենէ սուրբ Աւետարան։*

դ. 285բ. *(Անընթեռնելի հիշատակագրություն. միայն կարդացվում է «ՌՁԳ» (1634) թվականը)։*

21

# Ա Ւ Ե Տ Ա Ր Ա Ն

*(Նյու-Յորք, Վարդան Վարդանյան)*

ԺԶ—ԺԷ—XVI—XVII

Գրիչ՝ *Բարսեղ կր.։* Թերթ՝ *281։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *12,5×17,5։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *23։* Մանրանկարչություն—*խո-*

րան 10 (Թուղթ Եվսեբի՝ 2բ, 3ա և Համաբարբառ կանոններ՝ 4բ, 5ա, 6բ, 7ա, 8բ, 9ա, 10բ, 11ա)։ Տիրամայր՝ 12բ, Քրիստոս՝ 13ա։ Մատթեոս՝ 16բ, Մարկոս՝ 92բ, Հովհաննես՝ 221բ։ Կիսախորան՝ 17ա, 142ա, 222ա։ Լուսանցազարդ՝ բուսական։ Կազմ՝ կաշեպատ տախտակ, աստառ՝ հասարակ գործվածք։ Պահպանակ՝ թուղթ։ Վիճակ՝ բավարար, բայց թերթահան։

Ծնթ. *Ձեռագիրը Վ. Վարդանյանը ժառանգել է Թավրիզում՝ իր մորից։*

Հիշատակարան

Գրչի

*89բ. Զծոյլս ի բարին* Բարսեղ *և եթ կրօնաւորս յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր. ամէն։*

*138բ. Զառածեալս մեղօք* Բարսեղ *և եթ կրօնաւորս յիշեսջիք ի Տէր։*

*219բ. Աւրհնութիւն որ կարդայ, գովութիւն՝ որ լսէ. փառք տուողին և յիշատակ* Բարսեղ *և եթ կրօնաւոր գրչիս. ամէն։*

Հետագայի

*280բ. Զսրբոյ Աւետարանիս զըստացօղն և զընծայ տուողն* Սրբոյ Աստուածածնի *եկեղեցւոյս ոչ գոյր գրեալ ի սուրբ Աւետարանս, որոյ տըւօղն և նուիրօղն յիշեալ լիցի առաջի Քրիստոսի Աստուծոյ, և գտցի ողորմութիւն յաւուրն անեղեկի անհուն գթութեան նորին. ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զնորոգող և զկազմել տըւօղ սուրբ Աւետարանիս՝ զաւագերէց սրբոյ եկեղեցւոյս* զՏէր Յովսէփն *հանդերձ իւրովք միաբանիւքն. ամէն։*

*Նորոգ կազմ սորին եղև ի թուականութեանս ՌՃՂԱ (1742) և յունվարի Ա (1) ///։*

22

ԱՒԵՏԱՐԱՆ

*(Նյու-Յորք, Արսեն և Արմանդ Փուշմաններ, № 4)*

ԺԶ—ԺԷ—XVI—XVII

Թերթ՝ *28։* Նյութ՝ *մագաղաթ։* Մեծություն՝ *11×16,8։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *23։* Մանրանկարչություն—*Լուսանցազարդ՝ ավետարանական թեմաներով։ Զարդագիր՝ թռչնագիր, հանգուցագիր։* Վիճակ՝ *վնասված և պակասավոր։*

Ծնթ. *Ձեռագիրը Փուշմանների հայրը, անվանի նկարիչ Հովսեփ Փուշմանը (մահ. 1966), ստացել է գրող Զապել Եսայանից Փարիզում։*

23

# ԱՒԵՏԱՐԱՆ

*(Սան-Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 3)*

Սեպ-Խիզան ՌԾԴ—1605

Գրիչ՝ *Մխիթար։* Ծաղկող՝ *Տեր Խաչատուր։ Մեսրոպ սկ.։* Ստացող՝ *Հովհաննես քհ.։* Թերթ՝ *312։* Նյութ՝ *թուղթ (մագաղաթ՝ 312)։* Մեծություն՝ *14,5×19,5։* Դրություն՝ *երկսյուն։ Գիր՝ բոլորգիր։* Տող՝ *20։* Մանրանկարչություն— *Մարկոս՝ 86բ, Ղուկաս՝ 142բ, Հովհաննես՝ 236բ։* Կիսախորան՝ *1ա, 87ա, 143ա, 237ա։ Լուսանցազարդ՝ բուսական։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ դրոշմազարդ։* Վիճակ՝ *բավարար, միայն Մարկոս և Ղուկաս ավետարանիչների պատկերները վնասված։*

Ծնր. *Ձեռագրի մի քանի էջերի վրա գրված է գրաքննչական պարսկերեն կնքադրոշմ (տե՛ս № 4 ձեռագրի ծանոթ.)։*

*Այս Ավետարանի մասին գրել են՝ Մ. Սմբատյանցը («Նկարագիր ս. Կարապետի վանից Երնջակա...», 1904, էջ 308), Ե. Լալայանը («Ազգագր. հանդես», 1905, էջ 159), Մ. Մաքսուդյանը («Արարատ», 1911, էջ 315), Գ. Հովսեփյանը («Հայաստանյայց եկեղեցի», 1944, հոկտ., էջ 20)։ Գրչի հիշատակարանը, ըստ «Արարատի» (որտեղ կան փոքր վրիպակներ) հրատարակված է «Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններում», հ. Ա (կազմեցին Վ. Հակոբյան և Ա. Հովհաննիսյան, 1974, էջ 191)։*

*Ձեռագիրը ժամանակին ունեցել է 351 թերթ, պակասում են սկզբի 26 թերթերի վրա եղած մանրանկարները և խորանների մեծ մասը։*

## Հիշատակարան

### Գրչի

*310ա.* *Աղաչեմ զձեզ յօժար սրտիւ,*
*Որք հանդիպիք այսմ տառի,*
*Յիշման առնէք զմեզ արժանի.*
*Եւ որ առէ Աստուած-ազդմի*
*Ըստացօղի սուրբ Աւետարանի՝*
*Քաջ և արի* Տէր Յովանիսին,
*Որ մականուն Քաշիշ կոչի.*
*Ի միտ առեալ զբանն Եսայի,*
*Որ առէ թէ՝ Երանի,*
*Որ ունիցի ընդանեակ յԵրուսաղէմ,*
*Եւ զաւակ ի Սիովնի։*
*Ըստացաւ զայս յաւժար սրտիւ,*
*Հալալ արդեանց իւր ամենի,*
*Սա է ունչինչ սուրբ գիշատակ*
*Հօգոյ իւրոյ և ծնօղի՝*
Տէր Միքայէլ *անուն կոչի,*
*Եւ մօր նորա՝* Փաշաջանի։
*Եւ որ առաւն է պարգևի՝*
*Քրիստոս Աստուած ամենայնի,*

*Զարքայութիւն տացէ ծրի*
*Տէր Յովանէս քաջ վարպետի,*
*Եւ ստացօղին Միխիթար գրչի,*
*Որ ակար անձամբ ի յանձն առի,*
*Եւ տառապեալ կենօք գրեցի*
*Ի դառն և ի նեղ ժամանակի,* ‖ *(310բ)*

*յորում նեղիմք ի յանօրինաց հարկապահանջութենէ, եւ առաւել ի սղութենէ հացի, որ լիտր ալիւրն ի Գ (3) շահի ու Գ (3) փարայ ծախեցին։ Ու զըզըպաշն եկաւ ի վերայ Վանայ ու բազում ոճիր գործեաց, ու արենհեղութիւն արարին ի միմեանց, բայց զառաջիկայն Աստուած գիտէ, որ աշխարհս ամէն ի մէջ նեղութեանց և տառապանաց է, մինչ մթան լուսարարն Քրիստոս՝ լուսանէ ամենայն աշխարհի։*

*Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զսուրբ Աւետարանս ի յերկիրն* Մայեկաց, *ի գեօղն որ կոչի* Սեպ, *և ծաղկեցաւ ի մայրաքաղաքս* Խիզան, *ընդ հովանեաւ սուրբ է խորանացս՝* Սուրբ Յարութեան *և* Սուրբ Աստուածածնին, Սուրբ Յովանիսին *և* Սուրբ Գրիգորին, Սուրբ Ստեփանոսին, Սուրբ Սարգսին *և* Սուրբ Մարտիրոսին, *ի թւականիս Հայոց ի ՌԾԴ (1605), ի հայրապետութեան Տեառն* Տէր Մելքեսէթ *կաթողիկոսի* Էջ‖*(311ա)*միածնայ *և ի մերոյս* Ախթամարայ՝ Տէր Գրիգորիս *կաթողիկոսի Ամենայն Հայոց։*

*Արդ, աղաչեմք զամենեսեանդ՝ զմանկունդ սուրբ եկեղեցւոյ, զի որք հանդիպիք սուրբ Աւետարանիս տեսութեան՝ կարդալով կամ օրինակելով և կամ հարևանցի տեսանելով, նա Աստուած-ողորմի ասացէք ինձ՝ մեղապարտ* Գրիգորիսի, *և հոգևոր որդոյն իմոյ՝* Տէր Խաչատուր *վարպետին, և* Մեսրոպ *սարկաւագին, որ աշխատեցան ի հետ անարժանիս՝ ի ծաղկել սուրբ Աւետարանիս, և մեղաց թողութիւն հայցեցէք մեզ և ծնողաց մերոց և ամենայն աշխատաւորացս ի սմա. ամէն։*

*Արդ, որք ճաշակէք յաստուածային սեղանոյս և վայելէք յանմահական բուրաստանէս, նա Աստուած-ողորմի ասացէք և մեղ[աց] թողութիւն հայ[ցե]ցէք ստա[ցողի] Աւետա[րանիս* Տէր*]* Յովանէս *բ[արեմիտ] քահանային և ծն[ողա]*‖ *(311բ)ցն՝ մահդասի* Տէր Միքայէլին *և* Փաշաջանին, *և կողակցին՝* Անլիփաշին, *և որդոցն՝* Վարդանիսին, Յոհանիսին *և* Ամիրսէթին, *և եղբօրն՝* Ամիրսէթին, *և քեռն՝* Նուրանփաշին, *և հօրեղբարցն՝* Միրաքին, Գուլազըզին *և մահդասի* Ամիրազըզին, *և իւր որդոցն՝* Տէր Գրի*[գոր]*ին *և* Սենեքա*[*րիմին*]*, *և ամենայն ազգա[կանաց] նոցին՝ կեն[դանեաց] և հանգու[ցելոցն], և որ ասէ [զԱստուած] ողորմին, նա Աստուած իւրն ողորմեսցի. ամէն։*

*Դարձեալ կրկին անգամ յիշեցէք ի Քրիստոս զստացող սուրբ Աւետարանիս՝ զհեզահոգի* Յովանէս *քահանայն, և բղձողսն իւր՝* Տէր Միքայէլն *և* զՓա*[*շա*]*ջանն, *և զայլ ամենայն արեան մերձաւորս սոցա՝ զկենդանիս և զհանգուցեալս, և որ ի սուրբ գիրքս աշխատանք և երախտիք ունին, նա Տէրն մերն Քրիստոս ողորմեսցի սոցա յիւր միւսանգամ գալուստն. ամէն։*

Հետագայի

*312ա. Դարձեալ կրկին անգամ յիշեսջիք զվերջի ստացօղ սուրբ Աւետարանիս և ոսկեզօծ բուրաստանիս՝* Ագուլեցի *պարոն* Թումասն, *որ ի դառ-*

նայն յերկրէն Երնակաց ի Թէոդուպօլիս, հանդիպեալ էր անտանօր սրբոյ Աւետարանիս, զոր ոսկոփ բառացաւ զաս ի հալալ ընչից իւրոց՝ առ ի ընծայելոյ ի դուռն Սուրբ Թովմայի առաքեալի վանիցն, որ զկնի զալոյն իւրոյ յԱգուլիս, երեր ընծայեաց ի դուռն Սրբոյ առաքելոյս Թովմայի, և եա յիշատակ իւրն և ծնողացն իւրոց՝ հեզահոգի հանգուցեալ մահտասի Բաղտուն, և մօրն՝ Մուրվարին, և կողակցոյն՝ Ասլուն, և եղբարցն՝ Յովաննիսին, Գէորգին, Ստեփանին, և քերցն՝ Ղայիրին, Աննային և Ոսկինարին, որդւոցն՝ Կարապետին, և դստերրն՝ || (312բ) Սրբուհւոյն, և այլ ամենայն արեան մերձաւորացն իւրոց. որ և յիշատակ անջնջելի լիցի իւրև որդի կենդանի ի մէջ սուրբ եկեղեցւոյ, բերելով զպտուղ անհատ միշտ յանկնդրումին կենդանեաց և հանգուցելոց, յազգաց յազգս և յորդւոց յորդի, անզրաւ յաւիտեանս. ամէն: Հայր մեր որ: Ըստացուած սորա եղև ի հազարերորդի հարիւրերորդի ութսուն և մի յարաբարդի (1732), յամսեանն սեպտեմբերի յեօթներորդի:

## 24

## ԱՒԵՏԱՐԱՆ

(Նյու-Յորք, Տիգրան Տեյիրմանճյան)

Խիզան ՌՃԷ—1608

Գրիչ և ծաղկող՝ Կիրակոս: Ստացող՝ Ներսես արքեպիսկոպոս: Թերթ՝ 343: Նյութ՝ թուղթ: Մեծություն՝ 13.6×18.7: Գրություն՝ երկսյուն: Գիր՝ բոլորգիր: Տող՝ 21: Մանրանկարչություն—Ավետում՝ 5բ, Ծնունդ՝ 6ա, Քառասունօրյա գալուստ՝ 7բ, Մկրտություն՝ 8ա, Պայծառակերպություն՝ 9բ, Ղազարոսի հարությունը՝ 10ա, Մուտք Երուսաղեմ՝ 11բ, Ոտնալվա՝ 12ա, Խաչելություն՝ 13բ, Թաղում՝ 14ա, Դժոխքի ավերումը՝ 15բ, Հարություն՝ 16ա, Հոգեգալուստ՝ 17ա, Խաչ տերունական՝ 18բ, Քրիստոսը քառակերպյան աթոռի վրա՝ 19ա: Խորան՝ 10 (Թուղթ Եվսեբի՝ 20բ, 21ա: Համաբարբառ կանոններ՝ 22բ, 23ա, 24բ, 25ա, 26բ, 27ա, 28ա, 29բ): Մատթեոս՝ 33բ, Մարկոս՝ 114բ, Ղուկաս՝ 173բ, Հովհաննես և Պրոխորոն՝ 265բ: Կիսախորան՝ 34ա, 115ա, 174ա, 266ա: Կազմ՝ կաշեպատ տախտակ, դրոշմազարդ: Վիճակ՝ բավարար:

Ծնր. Ձեռագիրը Տ. Տեյիրմանճյանը գնել է 1943 թ. հունվարին, Նյու-Յորքում, պարսկական և Մերձավոր արևելյան արվեստի գործերի Քարմինաթիի հավաքածուի հրապարակային աճուրդում: Այս հավաքածուի մեջ եղել են նաև այլ հայերեն ձեռագրեր, Լևոն հայոց արքայի 1197 թվականի արձանագրությամբ թուղթ և հայկական պղնձե մի խաչ. ձեռագրերից երեքը՝ ըստ աճուրդի ցուցակի (տե՛ս The Carminati Collection of Persian art. Public Auction sale. Parke—Bernet Galleries, Inc., 1943) №№ 155, 156 և 170, գնել է Նյույորքաբնակ պրն. Հարություն Հազարյանը, իսկ մնացած հինգ ձեռագրերի (№№ 23, 115, 150, 157, 161) և վերոհիշյալ իրերի ճակատագիրն անհայտ է:

1972 թ. փետրվարի 14-ին Նյու-Յորքում պրն. Տ. Տեյիրմանճյանը տա-

գիրխ գրողի միջոցով Մաշտոցի անվան Մատենադարանին նվիրեց այս ձեռագիրը (№ 10520):

### Հիշատակարան

### Գրչի

334ա. Փառք... ‖ (337ա) ... Ամն ի յաւարտեալ զարմից Ներսէս արքեպիսկոպոս, զոր ի վաղուց հետէ ցանկայր աստուածախօս այսմ մարգարտաշար, լուսափթիթ սուրբ Աւետարանիս, և ետ գրել՝ յիշատակ բարի հոգւոյ իւրոյ և ծնողաց իւրոց, ի միտ առեալ զբանն ‖ (337բ) Եսայայ, որ ասէ. Երանի որ ունիցի զաւակ ի Սիոն և ընդանեակ յԵրուսաղէմ: Վասն այն յուսոյն ետ գրել զսուրբ Աւետարանս և զարդարել ետ ոսկւով և երանգ երանգ ծաղկով, յիշատակ իւրն և իւր ծնողացն, հօրն՝ Գրիգորին և մաւրն՝ Մոշանին, և եղբարցն՝ Վանէսին, և որդոցն՝ Վարդանիս/ի/ն, Դաւթին, Յոհանիսին, Սարգսին, և միւս եղբօրն՝ Նահապետին, Թումին և որդոյն Մարգարին, զաւակացն՝ Մոշանին, Թաւէզին, Մարգարտին և քերն՝ Արուսին, և ամենայն արեան մերձաւորաց նոցին. ամէն:

Արդ, որ ճաշակէք յամէնաստ սեղանոյս և վայելէք յաստուածային բուրաստանէս, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր առաջի անարին գենմանն ի ժամ սոսկալի սուրբ պատարագին և լի սրտի և բոլոր հաւատով Աստուածողորմի ասացէք ստացողի լուսապայծառ սուրբ Աւետարանիս՝ Ներսէս եպիսկոպոսին, և ծնողաց նորին, հօրն՝ Գրիգորին և մօրն՝ ‖ (338ա)Մոշանին, և եղբարցն՝ Վանէսին, Նահապետին, Թումին, և որդոցն՝ Դաւթին, Վարդանիսին, Սարգսին, Յոհանիսին, Մարգարին, և ամենայն արեան մերձաւորաց նոցին. ամէն:

Եւ արդ, ես յետինս ի կարգաւորաց և անարժանս ի մանկունս եկեղեցւոյ, անարուեստ ի գիրս գրչութեան՝ Կիրակոս անարժանս, հրաման առեալ ի պատուիրանագիր առաքելական բանէն, որ ասէ. Յոր կոչումն կոչեցար՝ ի նմին կացջիր: Շնորհիւ Տեառն սկսայ և ողորմութեամբ նորին կատարեցի զաստուածախօս և զաստուածաբնակ տառս՝ զլուսազարդ սուրբ Աւետարանս ի լաւ և յընտիր աւրինակէ, ի մեծ թուականիս Հայոց ի Ռ և ԾԷ (1608) ամին, ի քաղաքիս, որ կոչի Խիզան, ընդ հովանեաւ աստուածաբնակ սուրբ տաճարացս՝ Սուրբ Յարութեան և Սուրբ Աստուածածնին, Սուրբ Յովաննէս Մկրտչին, Սուրբ Ստեփաննոսին և Սուրբ Գրիգորին, Սուրբ Սարգսի Զօրավարին և որդւոյ նորա Մարտիրոսին, ի հայրապետու‖(338բ)թեան տեառն Աղթամարայ նորընծայ Ստեփաննոս կաթողիկոսին. Տէր Աստուած պահեսցէ զնա անսասան ի պարծանս մեր եւ ի հ... (ընդհատված):

339ա. Դարձեալ յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զՆերսէս արհ[ի]եպիսկոպոսն և Աստուած-ողորմի ասացէք նմա: Ես Ներսէս եպիսկոպոս գնացի սուրբ քաղաքն յԵրուսաղէմ և հանդիպեցա այս աստուածախօս Աւետարանիս, և ստացայ ըզսա ի հալալ յարդեանց իմոց՝ յիշատակ հոգւոյ իմոյ և ծնողաց իմոց, հօրն՝ Գրիգորին և մօրն՝ Մոշանին, և եղբա[ր]ցն՝ Վանիսին, կողակցին՝ Սալամին և որդոցն՝ Վարդանիսին, կողակցին՝ Նղաշին և որդոցն՝ Գրիգորին. Վարդխաթունին. Սահակին, Աւետիսին, Դաւթին, կողակցին՝ Մոշանին, որդոցն՝ Բարունակին, Յովանիսին, Դարմանին, զաւակացն՝ Նարգզին.

Խաթունին, Յովանիսին, *կողակցին*՝ Ինախին, *դստերն*՝ Շուշանին, Սարգսին, *կողակցին*՝ Խանումին, *որդո[յ]ն*՝ Աբրահամին, *քուերն*՝ Զաղին *և իւր որդոցն, և միւս եղբօրն*՝ Նահապետին, *կողակցին*՝ Ալամին, *զաւակացն*՝ Հայրապետին. Մոջանին, Թաւէզին, *և միւս եղբօրն*՝ Թումին, *կողակցին*՝ Ջանեկին, *որդոյն*՝ Մարգարին, *կողակցին*՝ Սա‖(*339բ*)լամին, *որդոյն*՝ Կարապետին, Հոռոմին. *քուերն*՝ Արուսին, *որդ[ո]ցն*՝ Մարգարին, Հայրապետին, Մկրտչին, *և հարսին*՝ Ղարիպ Խաթունին, *և հօրեղբարցն իմոց*՝ Սահակին, Միլիտոնին, *որդո[յ]ն*՝ Մուրատին, *կողակցին*՝ Խաթունին, *որդո[յ]ն*՝ Առաքելին, *կնոջն*՝ Հոռոմին, *և* Սաւսնին, *կողակցին*՝ Գուլումին, *որդոցն*՝ Պարսամին, Գրիգորին, Խանէսին, Խլղաթին, *և գեղի քահանայիցն և տանուտերացն*՝ Տէր Յոհանիսին, Վարդանիսին, Սահակին, *և ամենայն արեան մերձաւորաց սոցին, և որ չի բերանով և բոլոր սրտիւ Աստուած-ողորմի ասէ սոցա, Աստուած իւրն ողորմեսցի. ամէն։*

*Քրիստոս Աստուած, քո անճառելի ծնընդեամբդ և սքանչելի յարութեամբդ ողորմեա և մեղաց թողութիւն շնորհեա* Ներսէս *արքեպիսկոպոսին և ծնողաց նորին, հօրն*՝ Գրիգորին *և մօրն*՝ Մոջանին, *և եղբարցն*՝ Վանիսին *և* Սալամին, *և որդոց նոցին, և միւս եղբօրն*՝ Նահապետին, *[կողակցին՝]* Ալամին *և որդոց նոցին, և միւս եղբօրն*՝ Թու‖(*340ա*)մին, *[կողակցին՝]* Ջանեկին *և որդոց սոցին, և այնոցիկ, որ ի սուրբ Աւետարանս մասն ունիցին*՝ Աստուած *լուսաւորէ զիւրեանց հոգին և զիւրեանց յիշատակն խաղաղական կենաւք պահէ. ամէն։*

*340ա. (Նույն բոլորգրով) Դարձեալ յիշեցէք ի Քրիստոսի զվերջին ստացող լուսազարդ, պայծառ և պատուական սուրբ Աւետարանիս՝ զխօջա* Մատուսն, *որ ստացաւ սա ի հալալ և յարդար վաստակոց իւրոց յիշատակ, և ետ վերըստին ոսկով զարդարել զտնագլխներն ի վայելչութիւն սուրբ Աւետարանիս, յիշատակ հոգոյ իւրոյ և իւր ծնողացն, հօրն՝ խօջա* Մուրատին *և մօրն*՝ Զախարունին, *և* եղբարցն՝ Աղափիրուն *և* Աղամիրուն, *և կողակցուն* ‖ *(340բ) իւրոյ*՝ Դշխունին, *և որդոցն՝ խօջա* Գրիգորին, Մուրատին *և* Մանասին, *և դստերացն*՝ Մէրտատիկին *և* Զախարունին, *և միւս կողակցուն*՝ Շուշանին, *և որդոցն՝ խօջա* Աւետին, Խաչիկին, Աղափիրուն *և* Պետրոսին, *և դստերացն*՝ Մէրտատիկ, Թագուհուն *և* Յուղիղին. *ամէն։*

*Դարձեալ յիշեցէք ի Քրիստոս զխօջա* Աւետիկն *և զկողակիցն իւր՝* Գուլնաբարն *և զորդին իւր՝ խօջա* Խաչիկն *(շար. ուշ նոտրգրով) և զխօջայ* Աղափիրի, *և զկողակիցն իւր՝* Ազատխանն, *և զորդին իւր՝ պարոն* Ավէտաղէն *և* զխօջամալըն *և* բզՄուրասէն. *ամէն։*

Հետագայի

ա. *340բ. /// Ի Նոր Ջուղայ թվին Փրկչի ՌՊԼԴ (1834) համիրայ, Աստուած պտուղ պարգևեց, օրն շաբաթ, որ էր սուրբ Յակոբայ տօնախմբութիւնն, խնդրս եմք, ղադամօվ յիշի կամավն Աստուծոյ։ Ես մեղաւոր չնչին ծառայ՝ Գ. Մ.*

բ. *344ա. Պարոն Տիգրան Տէյիրմանճեանի այս Աւետարանը քննեցի և յիշատակարանից առանձին թղթի վրայ գրեցի հարկաւոր տեղեկութիւնները։*

*Գարեգին արքեպիսկոպոս*

*Նորթ. Պյրկին* *[Յովսէփեան]*

*1943, 30 նոյեմբ.*

## 25

## ԱՒԵՏԱՐԱՆ

*(Նյու Յորք, Հ. Փ. Քրաուզ)*

Սպահան ՌԿԴ—1615

*Իրանի Սպահան քաղաքում գրիչ Հայրապետ երեցի ընդօրինակած և Մեսրոպ Խիզանցու ծաղկած այս Ավետարանի մասին առաջին տեղեկությունները տալիս է Հ. Տեր-Հովհանյանցը («Պատմություն Նոր Ջուղայու», Ա, Նոր Ջուղա, 1881, էջ 67—68), ըստ որի մատյանը «կայ յԱմենափրկիչ եկեղեցւոջ Երևան Թաղի»: Սակայն գեղեցիկ մանրանկարներով պատկերազարդված այս Ավետարանը հետագայում ընկել է Ժ. դը Մորգանի հավաքածուի մեջ. Ֆր. Մակլերը այն մանրամասն նկարագրել է «Ժուռնալ Ասիաթիքում» (տե՛ս* *Frédéric Macler*, Notices de Manuscripts arméniens vus dans quelques bibliothéques de l'Europe centrale, Paris, 1913. Extrait du Jurnal Asiatique (septembre—octobre et novembre—decembre, 1913, p. 643—651).

*Պետք է նշել, որ փոքր ինչ ավելի ուշ մատյանը Ժ. դը Մորգանից ձեռք է բերել հնագետ ու պատմաբան, Թուրքիայում Ֆրանսիայի նախկին դեսպան Ժան Պոզին, որի ձեռագրերն ու այլ հնությունները աճուրդով վաճառվեցին Փարիզում 1971 թ. ապրիլի 30-ին: Այստեղ խնդրո առարկա մատյանը գնեց նյույորքաբնակ գրավաճառ Հ. Փ. Քրաուզը* (16 East 46th st., New York):

*Պրն. Հ. Քրաուզը հոժարակամ մեզ ծանոթացրեց ձեռագրին և, մեր խնդրանքով, տրամադրեց մանրանկարների սլայդները:*

*Ձեռագրիս հիշատակարանը տե՛ս Վ. Հակոբյանի և Ա. Հովհաննիսյանի կազմած «Հայերեն ձեռագրերի ԺԷ դարի հիշատակարաններ», Ա, Երևան, 1974. էջ 569—570:*

## 26

## ԺՈՂՈՎԱԾՈՒ

*(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան,* Arm. MS № *3)*

Հալեպ ՌՃԲ—1653

Գրիչ՝ *Աբրահամ երեց:* Ստացող՝ *Հովաննես արք.:* Թերթ՝ *259 (էջ 518):* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *15×21:* Գրություն՝ *միասյուն:* Գիր՝ *նոտրգիր:* Տող՝ *15:* Կազմ՝ *կաշեպատ տախտակ դրոշմազարդ:* Վիճակ՝ *բավարար:*

Ծնր. *Ձեռագիրը Կոնգրեսի գրադարանին է նվիրված՝ այս գրադարանի հայկական հավաքածուի կոմիտեի և Բեյրութի հայկական մշակութային միության միջոցով 1953 թ. մարտի 15-ին: Կազմի վրա՝* «Near East *163*»:

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



### Հիշատակարան

### Գրչի

էջ 515. Այս է Յիշատակարան գրոցս—Փառք ...Որ ետ կարողութիւն նուաստ ոգւոյս՝ Աբրահամ անարժան երիցուս, հասանել աւարտ գրոյս, որ է պատմութիւն նախահաւրն մերում Ադամայ...

Արդ, այս ամենայն բարու||(էջ 517)թեանցս և աստուածատունկ բուրաստանիս ցանկացաւղ եղև սմայ աստուածամեծարն և հեզահոգին հոգևոր որդեակս մեր՝ Յովաննէս սարկաւագն, որ է երկրէն Արաբկերու, ի գեղջէն Մաշկերու. և ետ գրել զսա ի հալալ ընչիցն և արդար վաստակոցն՝ յիշատակ իւր անձինն և իւր ամենայն արեան մերձաւորացն։ Զոր և հայցեմք և խնդրեմք ամէնաւրհնեալ Տեառնէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ, որ բարով վայելել տացէ սմայ երկար ամաւք և բազմերամ ժամանակաւք մինչև ի խորին ծերութիւն. ամէն։

Արդ, գրեցաւ սա ի թվականիս Հայոց ՌՃԲ (1653) ի մայրաքաղաքս ի Հալապ. ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածին և Սուրբ Քառասունք եկեղեցեացս և այլ եկեղեցեացս, որ աստ կան || (էջ 518) հաւաքեալ ի պահպանութիւն ամենայն հաւատացելոց։ Գրեցաւ սայ ի թագաւորութեանն տաճկաց Սուլտան Մուհամատ նորընծայ թագաւորին, ի կաթողիկոսութեան Տանն Կիլիկ/ի/ոյ Տեառն Տէր Ներսէսի սրբազան հայրապետին և ի կաթողիկոսութեանն Էջմիածնի Տէր Փիլիպոս խարազնազգեաց ճգնաւորի։ Արդ, որք հանդիպիք սմայ կարդալով կամ աւրինակելով, կամ հարևանցի տեսանելով՝ յիշեսջիք ի մաքրափայլ և երկնաթռիչ աղաւթս ձեր զվերոյ յիշեալ զՅովաննէս սարկաւագն և զիւ զանարժան գծողս՝ զԱբրահամ երէցս, որ զանունս ունիմ և ոչ զգործս։ Այլ որ առատն է ի տուրս բարեաց, տացէ ձեզ յիշելոցդ և մեզ յիշեցելոցս զիւր երկնից արքայութիւնն. ամէն։ Հայր։

27

## ՇԱՐԱԿՆՈՑ

*(Սան Ֆրանցիսկո, Ն. Մարտիկյան, № 4)*

Իկոնիոն ՌՃԷ—1658

Գրիչ՝ *Գրիգոր։* Ստացող՝ *Աստուածատուր մահտեսի։* Թերթ՝ *362։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *10,2×14։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *24։* Մանրանկարչություն—*Կիսախորան՝ 3ա, 12ա, 109բ, 137ա, 291բ, 312բ, 338բ։ Լուսանցազարդ՝ բուսական։ Զարդագիր՝ հանգուցագիր, թռչնագիր (կարմիր և կապույտ)։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ դրոշմազարդ, աստառ՝ ծաղկազարդ գործվածք։* Պահպանակ՝ *սկզբում 2 թերթ մագաղաթ։* Վիճակ՝ *բավարար։*

### Հիշատակարան

### Գրչի

*362ա. Փառք... Արդ, գրեցաւ եղանակաւոր տառս, որ կոչի Շարակնոց, այսինքն՝ շարեալ ակունք, ի լաւ և յընտիր աւրինակէ, որ ասի* Խլու Պապու, *որ է յոգնեալ և յստակեալ առաջին վարդապետացն և վարժապետացն, ձեռամբ մեղսամած* Գրիգորիս, *ի յերկիրս* Իկոնիոն, *որ ասի* Ղօնիա, *ի դուռն* Սուրբ Աստուածածնին, *ի թվականիս Հայոց յամի ՌՃԷ (1658)։*

*Արդ, որք հանդիպիք սմա ուսմամբ կամ աւրինակելով, յիշեսջիք զգծող սորա՝ զ*Գրիգորն *միով Տէր-ողորմեայիւ, որ և ձեզ լիցի ողորմութիւն յամէնողորմ արարչէն. ամէն։*

*Եւ դարձեալ յիշեսջէք ի Տէր զստացող սորա՝ զմահտեսի* Աստուածատուրն, *որ այժմ հանգեաւ ի Քրիստոս։ Ով որ յիշէ՝ յիշեալ լիցի ի Քրիստոսէ. ամէն։ Հայր մեր որ յերկինս։*

28

## ԱՒԵՏԱՐԱՆ

*(Նյու Յորք, Արսեն և Արման Փուշմաններ, № 3)։*

Քարահատ գյուղ ՌՃԸ—1659

Գրիչ, ծաղկող և կազմող՝ *Գրիգոր երեց։* Ստացող՝ *Եղիա։* Թերթ՝ *319։* Նյութ՝ *մագաղաթ։* Մեծություն՝ *12×16,3։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *19։* Մանրանկարչություն—*Խորան՝ 8 (Թուղթ Եվսեբի՝ 3ա, 4ա և Համաբարբառ կանոններ 5բ, 6բ, 7ա, 8ա, 9բ, 10ա)։ Մատթեոս՝ 13բ, Մարկոս՝ 105բ, Ղուկաս՝ 162բ, Հովհաննես՝ 250բ։ Կիսախորան՝ 14ա, 106ա, 163ա, 251ա։ Լուսանցազարդ՝ բուսական։ Զարդագիր՝ թռչնագիր և հանգուցագիր։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, Ա փեղկին՝ արծաթյա խաչելութիւն։* Պահպանակ՝ *մագաղաթ։* Վիճակ՝ *բավարար։*

## Հ ի շ ա տ ա կ ա ր ա ն

### Գրչի

313ա. Փառք... Աւարտեցաւ եռահրաշ և հոգիազարդ Աւետարանս ձեռամբ բազմամեղ Գրիգոր լոկ անուամբ իրիցու, ի թըւականութեանս Հայոց ՌՃ և Ը-երորդի (1659), ի մարտ ամսոյ Ի (20), զոր էր չափկապեալ երանեալ աւետարանչացն ըստ բազմաերանգ գունոց ի մի ոստայն անկանելով հաճախ զոր տրաւետակե[ա]լ անուշոտաց ծաղկանց եւ եփեցական կազմութեամբ... Այսպիսի բիւր գանձուց և մեծագին մարգարտաց յոյզ և խնդիր էր զօրքանանելոյ և ի մանկութենէ միայնացեալ մահդասի միայնակացն Եղիա. ի մանկութենէ լուեալ զհրամանս Տեառն, որ ասէ. Եթէ որ ոչ թողցէ զտուն իւր և զամենայն ինչ որ աշխարհայի[ն], ոչ կարէ իմ աշակերտ լինել: Վասն որոյ թողեալ յաշխարհ և որ ինչ աշխարհի է, աշակերտեցաւ հրամանացն Քրիստոսի, որ ասէ. Առ զխաչ քո և եկ զկնի իմ: Ի մանկութենէ իւրմէ առեալ յանձն զչարչարանս մարմնոյն և գնացեալ ի մենաստանն Ղարամուրատու ի յանապատն սուրբ: Եւ կեցեալ անդ ժամանակս ինչ, և հրամանաւ սուրբ հօրն իւրոյ տեառն Տէր Տէրունի մաքրազարդ և սրբանեալ կրօնաւորի, գնացեալ ուխտ ի սուրբ քաղաքն Երուսաղէմ և համբուրեալ լուսաբուղխ գերեզմանն Քրիստոսի: Եւ անտի դարձեալ եկն առաջին ուխտն իւր՝ ի անապատն սուրբ, և ստացաւ բազում գրեանս, և շատ շինութիւնս աւելացոյց ի յանապատին: Եւ յետ ժամանակաց վախճանեալ ի սէր սուրբ Աւետարանիս, հրամանաւ հօրն իւրոյ սրբոյ Տէր Տէրունին և կամակցութեամբ եղբարցն ամենեցուն, եկեալ առ մեզ, և խնդրեաց կատարել զցանկութիւնս սրտի իւրոյ: Եւ իմ՝ ձեռն եդեալ աւարտեցի զԱւետարանս սուրբ, և ծաղկեցի երփներփն գունովք և ոսկէզօծ արակօք՝ ի խնդրոյ նորին: Եւ յետ գծագրել զսա վասն յիշատակի հոգւոյ իւրոյ և հոգեւոր հօրն Տէր Տէրունին: Վասն որոյ հողմամած դիմօք աղաչեմ զդասս սրբազանից զպատահողաց տիեզերաքարոզ սուրբ Աւետարանիս, յիշել սրտի մտօք յաղօթս ձեր զԵղիայ միայնակացն, որ բազում ջանս և աշխատանս կրեաց ի վերայ սուրբ Աւետարանիս և բազում անգամ որդորեաց մեզ աւարտ հասուցանել, յիշել զնա և Աստուած-ողորմի ասել իւրն և ծնողացն իւրոց. ամէն: Այլ և աղաչեմ զձեզ յիշել զմաքրասուն կրօնաւորն զՏէր Տէրունին և զմիաբանսն սուրբ ուխտին՝ զԳրիգոր եպիսկոպոսն և զԿարապետ աբեղայն և Տէր Եղիայն. և զամենայն միաբանսն սուրբ ուխտին յիշել և Աստուած-ողորմի ասել. յիշօղէդ՝ յիշեալ լիցի[ք] ի Քրիստոսի Աստուծոյ մերոյ. ամէն:

Եղև աւարտ սուրբ Աւետարանիս ի յերկիրս Գանջոյ, ի գեղս որ կոչի Քարահատ, ընդ հովանեաւ Սուրբ Աստուածածնիս, ի ժամանակս Շահ Աբասին Փոքոյ և ի կաթողիկոսութեան Հայոցս Աղուանից տեառն Տէր Պետրոսի մաքրասուն և սուրբ հայրապետի և կրկին լուսաւորչի, որ և խնամօք Աստուծոյ և շնորհօք Սուրբ Հոգւոյն և բարի քաղաքավարութեամբն իւրով լուսաւորեաց զխաւարեալ տունս Աղուանից և պայծառացոյց զեկեղեցիս կարգաւորութեամբ. որոյ Աստուածն ամենայնի տացէ նմա երկար կեանք և մեղաց թողութիւն: Եւ մերում եպիսկոպոսութեան բազմահանճար և պատուական րաբշապետի տեառն Տէր Անտոնի՝ վերադիտողի սուրբ Աթոռոյն Կաթողիկէի վանիցն, որ յայսմ ժամանակի սա ևս բազում բարութիւնս արար ի կարգս և հաստատութիւնս հաւատոյ:

Այլ և աղաչեմ յիշել զծօղ, ծաղկօղ և կազմօղ սուրբ Աւետարանիս Գրիգոր բազմամեղ երէցս հանդերձ ծնօղօք իմովք, և Աստուած-ողորմի ասել։ Այլ և աղաչեմ անմեղադիր լինել պակասութեան սորա, զի մագաղաթն յոյժ վատ էր, մանաւանդ թէ ի ծաղկել համարաբերաւոյն, զկէս աւուրն տեսանէի և տարսափէի և կէս աւուրն ի տխրմանէ նկարէի ըստ խորհրդին և ոչ վայրապար։

Այլ և աղաչեմ յիշել զամենեսեան, որք ունին աշխատանս ի վերայ մեր և ի վերայ սուրբ Աւետարանիս։ Այլ և յիշել զվարպետ գործոյս իմոյ զՏէր Դաւիթն և զծնօղն իւր, յիշել զամենեսեան վերոգրեալսն և լի սրտիւ Աստուած-ողորմի ասել ամենեցուն, մանաւանդ ինձ գրողիս, որ յոյժ մեղաւոր եմ և ի մէջ նեղութեանց և ձեռաց չարեաց, և Տէրն փառաց ձեզ ողորմեսցի ի միւսանգամ գալստեանն իւրոյ. ամէն։

161ա. (Նոյն ձեռքով, ոսկեգիր) Յիշեցէք ի Քրիստոս զբարեմիտ և աստուածասէր Օլէէն, զհայրն իւր՝ Շահնազարն, մայրն՝ Ախաջն, կողակիցն՝ Խանումն, որդիքն՝ Ովանէսն, Գրիգորն, Գալուստն և դստերքն՝ Թարլառուն և Խուրոմն. յիշեցէք և Աստուած-ողորմի ասացէք, և Աստուած ողորմի ի գալստեան իւրում. ամէն։

Հետագայի

ա. 314բ. Դարձեալ յիշեցէք Սարգիսն և կողակիցն իւր Ոսկանձն և որդիքն իւր, որ ի գին սուրբ Աւետարանիս ետուն ՋՌ (6000) դեկան, որս Տէր Աստուածն մեր տացէ փոխարէն աստ և ի հանդերձեալն. ամէն։

բ. 314բ. Եւ յետ ժամանակաց ես Եղիայ և Մխիթար միայնակեաց բա-[հանա՞յքս] հայեցաք ի գեղեցկութիւն ներքուստ Աւետարանիս և ցանկացաք արտաքուստ եւս զարդարել զսուփ սուրբ Աւետարանիս, որպէս և տեսանէքդ իսկ։ Եւ շնորհօք Սուրբ Հոգւոյն եղեալ շրջեցաք ի դրունս ողորմածաց, և ամենեքեան ըստ կարեաց իւրեանց արարին ողորմութիւն, զոր Տէր Աստուած ամենեցուն բազմապատիկ հատուսցէ։

Դարձեալ յիշեցէք արդիւնաւոր ողորմութիւն տուօղին Ուլուպէկի որդի Սարգսին և կենակիցն՝ Գուլաղէն. և որդին՝ Ուլուպէկն և կենակիցն՝ Իճնէն, և միւս որդին՝ Առիպէկն։ Այլ և յիշեցէք Միճայէլն և կենակիցն՝ Աղասուլթանն. և զուստրն՝ Մարեան, եւ առաւել՝ Տէր Յակոբն և կենակիցն իւր՝ Յուստիանէն, և որդին՝ Սիմէօնն։ Դարձեալ յիշեցէք զՅակոբն և զկենակիցն իւր, այլև զՊալի որդի Վարդանն։ Դարձեալ յիշեցէք Շահնազարի որդի Օլէէն և կենակիցն իւր՝ Խանումն, և այլ յամենայն յարեան մերձաւորսն իւր. ամէն։ Դարձեալ յիշեցէք Յակոբն և կենակիցն՝ Սառիկն, և որդիքն և դստերքն. ամէն, և Ղուլին. ամէն։ Այլ և յիշեցէք Թաւուզեցի Ուլուխանն և կենակիցն՝ Թարվանդէն և ամենայն ազգայինսն. ամէն։ Այլ և յիշեցէք Ղարամուրատու յանսպասի միաբանութեան եւ հասարակ ամենայն միաբանքս, զոր Տէր Աստուած ամենեցուն վարձս հատուսցէ՝ ի կրկնակի գալստեանն իւրում. ամէն։ Եւս յիշեցէք ոսկերիչ Նիազն, որ բազում աշխատութեամբ զարդարեաց զաւետարանս ի Թուականիս հայոց ՌՃ և ԻԴ (1675)-ին, մարեր։

գ. 315ա. Դարձեալ յիշեցէք զՔայլասակեցի Գրիգոր, ԲՌ (2000) դիան իւր հոգոյն բաժին եբետ. Աստուած իւր հոգոյն ողորմի։ Դարձեալ յիշեցէք Յովանէսն, Եղիսաբեթ, Նաւասարդ, Մարգարիտ, Մինասն, Ալավերդին, Մխիթարն,

Պետրոսն, Ոհան, Սուրկ, Սիրամարք, Դաւիթ, որ Ա (1) նոհ (տիոց), Ժ (10) ապաղի ավին. Աստուած ողորմի իւրեանց։

29

ԱՒԵՏԱՐԱՆ

(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան, Arm. MS № 5)

Կից ՌՃԼԳ—1684

Գրիչ՝ Հավհաղ երեց։ Թերթ՝ 251 (—33)։ Նյութ՝ մագաղաթ և թուղթ (խառն)։ Մեծություն՝ 7×10։ Գրություն՝ երկսյուն։ Գիր՝ բոլորգիր։ Տող՝ 21։ Մանրանկարչություն—խորան 2 (համաբարբառով)։ Հովհաննես ավետարանիչ՝ 193բ։ Կիսախորան՝ 78ա, 122ա, 194ա։ Լուսանցազարդ՝ բուսական։ Զարդագիր՝ թռչնագիր։ Կազմ՝ չիք։ Վիճակ՝ վնասված, սկզբից ընկած են 1—33 թերթերը, թղթյա մասերը՝ թանաքակեր։

Ծնթ. Կազմի վրա կա՝ № 1369, իսկ Մարկոսի ավետարանի սկզբնաթերթի վրա՝ № 74։

Հիշատակարան

Գրչի

192բ. Զվ Զրտծրձ բարւ դաղլ (եղբայրագիր՝ «Ես Հավհաղ էրէց գրեցի»*) թվին ՌՃԼԲ (1683), մարտի ամսոյն ԺԶ (16), օրն ուրբաթ։

248ա. Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս ի յերկիրիս մերում Կեղւայց, ի գեօղն որ կոչի Կից, ի դրանէ Սուրբ Ստեփանոսի, ի հայրապետութեան Սուրբ Էջմիածնայ Տէր Եղիազարու, ի հովւապետութեան Ստարէի Տէր Յովաննէս արքեպիսկոպոսի, և սորի[ն] սպասաւոր Տէր Զաքարիա վարդապետի. ամէն։

Արդ, գրեցաւ սուրբ Աւետարանս թվին ՌՃԼԳ (1684) յունվար Ժ (10), աւարտ սորա ի թագաւորութիւն Պարսից Շահ-Սուլմանի, և գիրօղ յերկրիս մերում զՔաքղար սուլթանն, որում չարչարանաւք կորուսից յերկիրս, որ ետ Աստուած զերեք պատուհասն. Հանի Ալիխանն սարդար եղև և եկեալ ԽԲՌ (42.000) հեծելով, բնակեցաւ ի քաղաքն Կանջայ, և բազում աւերութիւն արար ի Հայոց աշխարհիս, և յետ նորա զարին և զերաշտութիւն, և բազումք կորեան վասն անհնչութեան իւրեանց։

Հետագայի

ա. 249ա. Արդ, յիշեցէք զբարեմիտ և զհեզահոգի զՏէր Մելիքսէթ, որ բազում փափականօք և յօժար սրտիւ ես և իմ կենակից Կօզալս ստացանք զսուրբ Աւետարանս՝ յիշատակ հոգւոց մերոց և իմ ծնօղացն, զհայրն իմ՝ Տէր Թումայն և մայրն իմ՝ Շահումն, և իմ որդիքն՝ Աստուածատուրն, Յովանէսն, Գրիգորն. Տէր Մինասն, Մովսէսն, Փիլիպոսն, և դստերքն իմ՝ Եղիսաբէթն և

* Եղբայրագիրը վերծանել է ընկ. Օ. Եգանյանը։

Մարգարիտն, որ հանգեան առ Քրիստոս։ Եւ ով որ կարդայ կամ օրինակէ, Աստուած-ողորմի ասէ Տէր Մէլիքսէթին և իմ կենակից Կօզալին, և ով որ խնամօք պահէ զսայ՝ արժանեաւ լիցի ի Քրիստոսէ։

բ. 249բ. Դարձեալ յիշեցեք զՇնաքաղու քահանայն՝ զՏէր Առաքէլն և զՏէր Գրիգորն, որ եղև պատճառ սորին, և տանուտէր Շապանն, որ է որդի Պարեքին և իւր ընտանիքին՝ Սարդարն, Սմբաթն, Պապէն, զխալիֆայ տիրացու Սողոմոնն, Մարուքէն, Թիվին, Պաղտասարն, Ղազարն, Սարուխանն և Բինեարի որդի Շապանն, Ովանէսն և Ղարամանի որդի Աստուածատուրն, Դաւութի որդի Ավաքն, Պային, Թասալին, Ոսկանն, իւր որդի՝ Պաղտասարն, Թումէն, Սիմաւոնն, Խաչատուրն, Ղափանն, Միքէլն, Ասլին, Վէլին։ Եւ սորա Շնաքաղին զովլաթաւորքն էին և մեծ համբայք, որ միշտ վարէին զկենցաղավարութիւնս իւրեանց։

Դարձեալ յիշեցէք զկազմող սորին զԼոռեցի Թումայն, և դուք յիշեալ լիջիք ի միւսանգամ գալստեան Քրիստոսի Աստծոյն մերոյ, որ է արժանեալ յաւիտեանս. ամէն։

գ. 250ա. Կրկին յիշատակ է սուրբ Աւետարանս Անդամէջցի Մատուրի որդի Սիրականին, որ գերի էր անկեալ ի ձեռս աւազակեաց, վերոյ Սիրանշանն ազատեաց և յետ յիշատակ Անդամէջոյ Սուրբ Աստուածածնա եկեղեցոյն, որոյ յիշատակն օրհնութեամբ եղիցի։ Եւ որ հանդիպիք ի սմա, մէկ Հայր մեղայիւ յիշումն արարէք զվերոյ գծողն սորին՝ զՄատուր և զմայրն՝ Եղիսաբերն և զհամայն ննջեցեալս սորին, և դուք յիշեալ լիջիք ի Քրիստոսէ մերմէ. ամէն։ Գրեցաւ ի թվին ՌՄԽԵ (1796), սեպտեմբերի ժե (15)-ին։

դ. 251ա. Յիշատակ ետու սուրբ Աւետարանս Շուշա քաղաքացի Աւագ Դանիէլեան Ղազարեանցս Սրբոյն Յովհաննու Մկրտչի եկեղեցւոյն՝ յիշատակ հոգւոց մերոց և իմ ծնողաց, որոյ յիշեցէք զպատճառս սորա, զի այլոց կալայ, և յիշեցէք իմ հայր Դանիէլն և եղբայրին իմ՝ Պետրոսն և Յարութիւն և զհամայն ննջեցեալն սորին։ Հանդիպողքդ յիշեցէք, յիշեալ լինիջիք ի Քրիստոսի Աստուծոյ մերմէ. ամէն։

Ի թւականին Քրիստոսի հազար ութ հարիւր ութսուն և երեք (1883) ամի, ժ (10) մարտի։

## 30

## ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔ

(Երևան, Ս. Երրորդութիւն Մայր եկեղեցի, № 2)

Դաշտ գյուղ — ՌՃԼԹ—1690

Գրիչ՝ Եփրեմ։ Ստացող՝ Մահդասի Ազարիա։

### Հիշատակարան

### Գրչի

...Որոց հայցմամբ և մաղթանօք ողորմի Քրիստոս Աստուած ամենայն հաւատացեալ քրիստոնէից, մանաւանդ մահդասի և սարկաւագ Ազարիային

*և ծնողացն՝ մահդասի* Նարղոլուն *և* Հռիփսիմին, *և որդոցն՝* Պետրոսին *և* Բենիամինին, *Բ (2)* Պօղոսիցն *և* Միքայէլին, *այլ և ամուսնոյն՝* Ոսկուն *և դստերացն՝* Վարդխաթունին *և* Հռիփսիմէ *կուսանին և* Սոփիային, *և հարսն՝* Մահրիխանին, *այլ և հանգուցեալ դստերացն՝* Գայիանին, Աննային *և* Մարիամին, *և ամենայն արեան մերձաւորացն, եւ ինձ՝ անիմաստ և ամենամեղ* Եփրեմ *գծողիս և ծնօղացն իմոց՝* Յովհաննէս *քահանայի և* Զանազանին, *և եղբարցն իմոց՝* Ղուկասին *և* Մինաս *սարկաւագին, և ամենայն առ ու արեան մերձաւորացն իմոյ և ընթերցողացն։*

* * *

*Ես նուաստ մահդասի* Ազարիայս *ստացա զՄէյմաւուրս յիշատակ ինձ և իմ ծնողացն և ետու ի դուռն սրբոց եկեղեցեացն, որ վերաձայնին* Երէքխորանի *և միւսոյն՝* Սուրբ Նշան *և* Սուրբ Մինաս, *որ կան հովանի և պահապան գիւղաքաղաքիս* Դաշտ *կոչեցեալ, և եդիցի սա վախմ և յիշատակ ի դուռն սոցին որքան ժամանակ որ կայ ի դուռն* Երէքխորանին, *յետ ժամանակաց, եթէ* Սուրբ Մինասի *եկեղեցին չինեն յաջողմամբն Աստուծոյ, եթէ կամին անդ տանին առանց արտօման, բայց այս Բ (2) եկեղեցեացս ի դատ, եթէ ով որ ջանայ հանել զսա ի սուրբ եկեղեցեացս՝ նզովեալ լիցի յԱստուծոյ և ամենայն սրբոց նորա. ամէն։*

* * *

*Փառք... Արդ, աղաչեմք բանիմաստ հանճարունդ սրբասէր եղբարցդ. որք հանդիպիք յայսմ տառիս, յիշեցէք զստացող սորա զմահդասի* Ազարիայն, *որ է յերկրէն* Գողթնեաց, *ի գեղջէն, որ կոչի* Ազուլեաց Դաշտ, *և զծնօղսն իւր՝ զմահդասի* Նարղոլին *և* զՀռիփսիմէն, *և զորդիսն իւր՝* զՊետրոսն *և* զԲենիամենն, *այլ և ամուսինն իւր՝* զՈսկին, *և հանգուցեալ որդիսն և զդստերսն իւր, այլ և զհարսն իւր* զՄահրիխանն *և զորդիսն։*

*Ով քահանայք և վարդապետք,*
*Ծգնաւորաց հանդիսակիցք,*
*Սուրբ կուսանացըն ջահակիցք*
*Եւ Քրիստոսի գոյլ խաչակիցք,*
*Յորժամ զայս գիրքս տեսանէք,*
*Կամ ընթերցեալ ըզսա լսէք,*
*Զմեղօք լցեալս դուք յիշեցէք*
*Եւ ողորմին բարբառեցէք։*
*Իմ աչս ի ձեզ է հանապազ,*
*Որ եմ լըցեալ մեղօք աննուազ,*
*Դուք ընթերցիք զայս աննիազ,*
*Զհոգիս հանէք ի սրբոց դաս։*
*Ես յաշխարհի մեղէք կացի*
*Եւ ծուլութեամբ զկեանքս անցուցի,*
*Զմարմնոյ կարիքս հոգացի,*
*Զհոգիս ի միտս ես ոչ ածի։*

Ի յայս կարգիս որ ես մըտի,
Ի աղայութեան ես յանձն առի.
Զոր ուխտեցի զայն չպահեցի,
Այլ հակառակըն գընացի։
Զայս հրեշտակաց կարգս որ առի,
Զամէն մեղօք ծըրարեցի.
Ես զմեղաց դուռն բացի
Եւ համարձակ ընդ այն մըտի։
Զար օրինակ բազմաց եղայ
Եւ ձուլութեամբ ընկըմեցայ.
Մարմինս հակեաց և գլորեցայ
Եւ չարաչար վատթարեցայ։
Ընդդէմ բարոյն եւ հեղգացայ
Եւ ընդ խոտանման ժիր գըտայ.
Զաւետարանն, որ ընթերցայ,
Զայն խըփեցի և մոռացայ։
Զինչ յաշխարհիս մարդիկք որ կայ,
Զամէնն լաւ քան զիս տեսայ.
Քան զամենայն յանցող գըտայ
'Ի ի սրբութեանց ես հեռացայ։
Մինչ ըզգերանս ի բաց ունիմ,
Լեզուս խօսի յար զաղտեղին.
Աչօք նայիմ ցանկականին
'Ի ի սիրտս առնում զխոց վէրին։
Ի մեծութիւնս եկի հասի,
Զաղքատութիւնս իմ գիտացի.
Զսէր աշխարհիս ես փարձեցի,
Որ է վատթար և յոյժ հոռի։
Փոխան սիրոյն պատարագի
Զաղտեղութիւնըն սիրեցի.
Հեշտախտութեան ծառայեցի
Եւ ցանկութեամբ զիս մաշեցի։
Զմարդիկք ի յայն հրաւիրեցի,
Զամենեսեան ես ուսուցի,
Ի յաղօթից ծուլացուցի
'Ի ի սէր մեղացըն կապեցի։
Ես ձեզ մեղայ, իմ սուրբ եղբարք,
Որ Քրիստոսի էք նմանակք,
Զձեզ իմ մեղօքըս խոցեցի,
Եւ չարաչար թերացուցի։
Զամենայն ոք զայթագղեցի
Բազում մեղաց դուռըն բացի.
Ընդ աղայութեան կարգս, որ առի,
Ես ի նմանէ ի զատ կացի։
Զաղքատութիւն յոյժ ատեցի,
Որ աստուծոյ է սիրելի։

Արդ, ես ի ձեր յոտս անկանիմ,
Ձեր գարշապարաց համբուրեմ,
Զղջմամբ սրտիւ յոյժ արտասուօք
Եւ զիմ զանգատըս ծանուցանեմ:
Զիմ վատութիւնս պարսաւեցէք,
Եւ ներելով մեղադրեցէք,
Վասն իմ զՏէրն աղաչեցէք,
Եւ թողութիւն ինձ հայցեցէք:
Միթէ լինի, որ ողորմի,
Ի ծերութեանս ժամանակի,
Եւ փոխեսցէ զիս ի բարի,
Զի մի անփոխ մեռանիմ չարի:
Ես մեղապարտ գծող սորա
Կամ սա մոլարըն յարակայ..
Ձեզ աղաչեմ սրտիւ բոլոր,
Զմեզ յիշեցէք ի կամս յորդոր:
Ով քահանայք աստուածասէրք,
Մաքուր մտօք սրբանուէրք,
Յորժամ որ զայս գիրքըս կարդայք,
Յաղօթըս ձեր զմեզ յիշեցէք:
Դուք զՔրիստոս աղաչեցէք,
Եւ թողութիւն մեզ հայցեցէք,
Զաստուած ընդ մեզ հաշտեցուցէք,
Եւ ի չարեաց անփորձ կացէք:
Միթէ ի մեզ Տէրն ակնարկէ,
Մեղօք հնացեալըս նորոգէ,
Ընդ սուրբ վըկայսն դասեսցէ,
Զանանց պըսակըն պարգեւէ,
Փառօք ի փառըս մեծարէ,
Զհանգիստն անճառ ինձ պատրաստէ,
Հանդերձ ընդ ձեօք փառաւորէ,
Զձեռագիր մեղաց մեր պատառէ,
Մանաւանդ ըստացողի՛
Սաղկերանի յայս մատենի
Ազարիա անուն բարի,
Հանդերձ ծնողօքն ամենայնի:

Գրեցաւ և աւարտեցաւ սրբոց պատմութիւնս, որ է Պատմագիր ամենայն սրբոց և կոչի Յայսմաւուրք, ի թուոյ կենարարին մերոյ Յիսուսի Քրիստոսի Ռ և վեց հարիւր Ղ (1690) և թուականիս Հայոց ՌՃ երեսուն և ինն (1690), յամսեանն օգոստոսի Բ (2) և մարգաց է (7), յաւուր շաբաթի, ի գեօղն, որ կոչի Ազուլեաց Դաշտ, ընդ հովանեաւ Սուրբ Ստեփանոսի եկեղեցւոյս, որ վերաձայնի Երեւխուռան, այլև Սուրբ Նշանի եկեղեցւոյս, որ կոչի Սուրբ Մինաս, ձեռամբ Եփրեմ անիմաստ քահանայի, ի հայրապետութեան Հայոց Տեառն Եղիազարու սրբազան կաթողիկոսի, և թագաւորութեան պարսից Շահ Սու-

վէմանին, և առաջնորդութեան նահանգիս Գողթնեաց սրբոյ Աթոռոյ առաքելոյն Թումայի՝ Յոհաննու արհի և պանծալի սրբանուէր եպիսկոպոսի և մետրապօլտի։ Եղև փափագանօք ստացող սուրբ գրոցս զմահդասի Ազարիային, որ ստացաւ զսա ի հալալ արդեամբք և ընչիւք իւրովք և ետ ընծայ ի դուռն Երեւխորանի եկեղեցոյն՝ յիշատակ անջինջ իւրն և ծնօղացն, որդոցն և ամուսնոյն իւրոյ, հօրն իւրոյ՝ մահդասի Նարղուլուն և մօրն՝ Հռիփսիմին, այլև ամուսնոյն իւրոյ՝ Ոսկուն, և որդոցն՝ նորաբողբոջ Պետրոսին, և Բենիամենին, և հանգուցեալ որդոցն՝ Պօղոսին և Միքայէլին, և դարձեալ Պօղոսին, այլև դստերացն իւրոց՝ Վարդխաթունին և Հռիփսիմէ կուսակրօն ապաշխարողին և Սոփիային, և հարսն Մահրիխանին, և հանգուցեալ դստերացն՝ Գայիանին, Աննային և Մարիամին։

Արդ, և ես մեղսամած և ամենամեղ միայն լոկ անուամբ մահդասի Ազարիայս, որ եմ յերկրէն Գողթնեաց, ի գեղջէս Դաշտ կոչեցեալ, և եմ ընդ յարկաւ և ընդ հովանեաւ Սրբոյ Երեւխորանի եկեղեցւոյս, որ կառուցեալ է անուամբ ամենասուրբ Երրորդութեանն և ունի հանգուցեալ զմասն ինչ ի նշխարաց սրբոյն Ստեփանոսի Նախավկային ի տաճարս այս, և ստացայ զայս միահամուռ սրբոց յիշատակաց գիրքս ի զաստուածատուր ընչիւք մերովք, և ետու զսա յիշատակ յաւիտենական ի դուռն Երեւխորանի եկեղեցւոյս զայն յուսալով, որ ասէ, եթէ՝ Երանի այնոցիկ, որ ունիցին զՍիոն որդի։ Եւ եղիցի յիշատակ ինձ և իմայնոցն, հօրն իմոյ՝ մահդասի Նարղուլուն և մօրն իմոյ՝ Հռիփսիմին, և կողակցին իմոյ՝ Ոսկուն, և որդոցն իմոց՝ Պետրոսին և Բենիամենին և հանգուցեալ Բ (2) Պօղոսիցն և Միքայէլին, այլև դստերացն իմոց՝ Վարդխաթունին և Հռիփսիմէ կուսանին և Սոփիային, և հանգուցեալ դստերացն՝ Գայիանին, Աննային և Մարիամին, և ամենայն արեան մերձաւորացն իմոց։ Եւ եղիցի ընծայ և նուէր Սուրբ Երեւխորանի տաճարիս և լիցի հոգւոյ իմոյ որդի Սիոնի։

Աղաչեմ զձեզ, ո՛վ ազգայինք իմ և օտարականք և ընթերցողք, այլև օրինակողք, որ խնամով պահեսջիք զսա, և լինիցի անշարժ ի դրանէ սորին։ Իսկ եթէ իմոց և օտարաց, յազգականաց և ի բարեկամաց, քահանայից և ժողովրդականաց, եթէ կրօնաւորաց և եթէ սարկաւագաց, եթէ ի մեծաց և եթէ ի փոքունց կամիցի և ջանայ հանել զսա ի դրանէ սուրբ տաճարի Երեւխորանիս, այնպիսին հանեալ և արտաքսեալ լիցի յաչացն աստուածորդոյն, որ ասէ. Երթայք յինէն, անիծեալք, ի հուրն յաւիտենական. այլև մասն և բաժին ընդ Յուդայի և ընդ խաչահանուացն առցէ։ Եւ դարձեալ նզովեալ եղիցի մարանաթայ, այլ և ԳՃԺԸ (318) հայրապետացն, ևս և նզովս ընդ Կայենի ժառանգեսցէ, և առաջի արդար դատաստանին Քրիստոսի պարտապան գտանի հոգւոյ իմոյ։ Իսկ այնպիսին, որ խնամօք պահէ ի ջրոյ, ի հրոյ և ի գողունեաց և պատրաստեցէ պատահարաց չարին՝ օրհնեալ լիցի ի յԱստուծոյ և յամենայն սրբոց նորա։

Դարձեալ յիշեցէք զպատուական քահանայք գեղջիս և սուրբ Երեւխորանի եկեղեցւոյս զՏէր Պօղոս քաջիմաստուն և աւագ քահանայն, և զՏէր Եսային, զՏէր Յովանէսն, և զՏէր Ստեփանն, զի ի ձեռն նոցա ընծայեալ եղև զՅայսմաւուրս ի տաճար Երեւխորանին։

Եւ ես աղաչեմ զձեզ, ո՛վ դասք քահանայից և սարկաւագաց, յորժամ ընթեռնուք զսա և կամ օրինակէք, յիշեսջիք ի մաքրափայլ յաղօթս ձեր զիս անարժան Ազարիա սարկաւագս և զծնօղսն իմ և, ինքն Քրիստոս, որ աստն

է ի տուրս բարեաց և գիւտ հատուցանել զիւրաքանչիւրոց վարձան աշխատողացն ստացողին, գծագրողին, կամեցողին և վարժողացն, օրհնեալն յաւիտեանս. ամէն:

Դարձեալ յիշեցէք զաւագ եղբայրն իմ զԶաքարիայն և զՄարգարէն, որք են հանգուցեալք առ Քրիստոս յոյժ ամենեցուն, և որդիք Զաքարիային՝ Յոհաննէսն, Արիսողոմն, Երեմիայն, Մատաթիայն, Աղամջանն և Ստեփանն և անդրանիկն Մաղաքիայն, որ փոխեալ է առ Քրիստոս, և զդստերսն իւր՝ Գուլխարունն, այլև զդուստր Մարգարին՝ զՍանդուխտն || ... (շար. թափված):

31

## ՊԱՏԱՐԱԳԱՄԱՏՈՅՑ

(Նյու Յորք, Էդուարդ Բաղդասարյան)

ՌՃԽԳ—1694

Գրիչ՝ *Մկրտիչ քհ.:* Թերթ՝ *16:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *22×31,7:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *25:* Մանրանկարչություն—*լուսանցազարդ՝ բուսական:* Կազմ, *անմշակ կաշի, առանց տախտակի:* Պահպանակ՝ *թուղթ, մեկական թերթ սկզբից և վերջից:* Վինակ՝ *վատ, թերթահան:*

Ծնր. *Ձեռագիրը տեսա Նյու Յորքում Հ. Հազարյանի մոտ. վնասվել էր ջրից: Տերը խնդրել էր Հ. Հազարյանից որոշելու վնասի չափը, որպեսզի ապահովագրական ընկերությունից փոխհատուցում պահանջի:*

### Հիշատակարան

### Գրչի

*16ա Քրիստոս Աստուած, բարեխօսութեամբ ամենայն սրբոց, մանաւանդ քո անարատ ծնօղին աղաչանօքն, ողորմեա հանգուցեալ Աղայբեղէ և իւր որդի Մկրտիչ քահանայիս, որ գծեցի սա յիշատակ ինձ և իմ ծնօղացն: Խիստ զառ[ն] և ի նեղ էր ժամանակն. եկեղեցիքն ամէնքն փակեալ էին. ՌՇ (1500) թուման ին ուզում: Տէր Աստուած, մեզ ազատեա. ամէն:*

*Գրվեցաւ թվականիս ՌՃԽԳ (1694), սեպտեմբերի ԻԱ (21) սկիզբն է:*

*Բարեաց ամենից առաջնորդ Սուրբ Հոգի Աստուած, առաջնորդեա միտօք և զատապարտեալ ծառայի քոյ՝ Մկրտիչ իրիցի, հասանել յաւարտ գծիս, զոր սկսայ յաւուրս տօնի Սուրբ Խաչին անցեալ Գ-շաբաթի:*

32

## ԽՈՐՀՐԴԱՏԵՏՐ

(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան, Arm. MS № 1)

ԺԷ—XVII

Թերթ՝ *23:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *19×26:* Գրություն՝ *երկսյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *23:* Մանրանկարչություն—*խաչելություն՝ 2բ: Խորան՝ 3ա: Լու-*

*սանգազարդ՝ սեսարաններ պատարագից։ Զարդագիր՝ թռչնագիր, գրագաշտը ծաղկազարդ շրջանակների մեջ։ Կազմ՝ կաշեպատ ստվարաթուղթ։ Վիճակ՝ բավարար։*

Հիշատակարան

Հետագայի

*Յիշատակ է խորհրդայտարս Ղազարեցի* Խօսռօվի *որդի* Կալուստին, *նիշատակ ի դուռն* Սուրբ Սարգսի, *որ է* Թախտայղալէն: *Ով որ պատարագ մատուցանէ, մէկ բերան ասեն՝ Աստուած-ողորմի* Կալուստի *հոգուն, մէկ Հայր մերոյ երկինք ասեն։*

*Գրեցաւ թվին Հայոց ՌՃՀԱ (1722), սեկտեմբերի ամսի Ի0 (20)-ըն։ Ըզգործըս ձեռաց մի՛ անտես առներ. ամէն։*

33

ՍԱՂՄՈՍԱՐԱՆ

*(Բոստոն, Հ. Թոփալյան)*

Սուրբ Նշան ԺԷ—XVII

Գրիչ՝ *Հովհաննես Երեց։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *6,5×19,5։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, աստառը՝ դրոշմազարդ կտավ։* Վիճակ՝ *բավարար։*

Ծնթ. *Ձեռագրի սկզբում կա անգլերեն նշում, կատարված 1855 թ. Դիարբեքիրում։*

Հիշատակարան

Գրչի

*Փառք... Գրեցաւ Սաղմոսարանս ի դուռն* Սուրբ Նշանին *ձեռամբս և անարժան մեղաւոր* Յոհաննէս *երիցուս, և ծնաւղաց, և ամենայն արեան մերձաւորաց, և որ զԱզորմին ասեն. ամէն։*

34

ՃԱՇՈՑ

*(Ֆրեզնո, Ս. Երրորդություն Մայր եկեղեցի, № 1)*

ԺԷ—XVII

Հիշատակարան

Հետագայի (ԺԸ դ.)

*Յիշատակ է սուրբ Ճաշոցըս ի դուռն* Սուրբ Մինասին, *որ է* Դաշտեցի Հախի *փէսայ Յարութիւնին և իւր ծնօղաց հօրոյն*՝ Պօղոսին *և մօրն*՝ Նազլուին, *և իւր կողակցուն*՝ Մարիամին, *և իւր որդոյն*՝ Գալուստին *և դստե[ր]ցրն*՝ Թագագուլին և Դաստագուլին, *և ամէնայն այրեան մերձաւորաց: Որ է յիշատակըս այս հալալ արդեանց իմոց, մատուցի ի տաճար* Սրբոյն Մինասայ: *Ով որ ծախէ կամ ուրիշ երկիր ղղրկէ՝ Քրիստոսի առաջեն պարտական մնա:*

35

*ՈՍԿԵԲԵՐԱՆ*

*(Յոհանսբուրգ, Հարավային Աֆրիկա, Գրիգոր Տեր-Պալյան*)*

ԺԷ—XVII

Գրիչ՝ *Գրիգոր սրկ.:* Թերթ՝ *117:* Նյութ՝ *թուղթ:* Մեծություն՝ *10×14:* Գրություն՝ *միասյուն:* Գիր՝ *բոլորգիր:* Տող՝ *17:* Մանրանկարչություն—*Հովհաննես՝ 1բ, Տիրամայրը մանկան հետ՝ 36բ, Ղուկաս՝ 72բ: Լուսանցազարդ՝ բուսական:* Զարդագիր՝ *թռչնագիր:* Կազմ՝ *կաշեպատ տախտակ, դրոշմազարդ. Բ փեղկը կտրված և կաշեզուրկ, աստառ՝ կարմիր գործվածք:* Պահպանակ՝ *մագաղաթ, երկուական թերթ սկզբից և վերջից, հատված Մարկոսի Ավետարանից, Ժ—ԺԱ դդ.:* Վիճակ՝ *վնասված, մանրանկարները՝ սևացած:*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. *Աւետարան բժշկութեան:*

բ. *Աղօթք պահպանութեան:*

գ. *Պատմութիւն Ոստիանէ կուսին:*

դ. *Աղօթք սուրբ Կուսին (և այլ աղոթք):*

ե. *Գիր օձահարի:*

զ. *Տաղ հոգոյ և մարմնոյ. «Այսաւր ցընծայ լեառնն Թափաւր...» (խազագրված):*

է. *Տաղ հայատառ թուրքերէն. «Պանում չաւխ ախլարում սէնտայ սան...»:*

Հիշատակարան

Գրչի

57ա. Գրիգորի գերարով և շնորհալի վարդապետ բսկնաւորեալ ի հոգոյն սրբոյ:

* *Այս և № 36 ձեռագրերը գտնվում էին Նյու Յորքի Հայոց առաջնորդարանում: Ծանոթացանք ԱՄՆ արևելյան թեմի առաջնորդ Տ. Թորգոմ եպս. Մանուկյանի հաճարակամ թույլտվությամբ:*

*111ա. Զանարժանս՝ Գրիգոր սարկաւագս յիշեա, և Աստուած զձեզ յիշեայ ի յաղեգ դատաստանն Քրիստոսի Աստուծոյ մեր։*

Հետագայի

ա. *95բ. Յիշատակ է բժշկարանս* Յարչիմանին *և կողակցին՝* Վարենէ, *և ամենայն յարեան մերձաւորացն. Աստուած ողորմի և փրկեսցէ հոգոյն։ Յիշատակ ի դուռն* Սուրբ Փրկը[չին]՝ *ի ձեռն* Տէր Տիրատուրին, *ամէն։ Հայր մեր։*

բ. *95բ. Ես ծառայ Աստուծոյ տիր[ա]ցու* Կարապետին... *(չար. անընթեռնլի)։*

36

ԱՒԵՏԱՐԱՆ

*(Յոհաննըսբուրգ, Հարավային Աֆրիկա, Գրիգոր Տեր-Պալյան)*

ԺԷ—XVIII

Թերթ՝ *251։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *18,7×14,3։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *23։* Մանրանկարչություն—*խորանզարդ՝ բուսական (կարմիր և կապույտ)։* Կազմ՝ *չիք։* Վիճակ՝ *վնասված։*

Մնք. *Տե՛ս № 35 ձեռագրի ծանոթագրությունը։*

37

ԺՈՂՈՎԱԾՈՒ

*(Լոս Անջելես, Արշակ Տիգրանյան, № 5)*

Քիլիս ՌՃԾԴ-ՌՃԿԱ—1705—1712

Գրիչ՝ *Տէր Փիլիպպէ (1ա—91բ, 1712 թ.),* Գաապար *դպիր։* Ստացող՝ *Մխիթար Քիլիսցի, Գասպար դպիր։* Թերթ՝ *169։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *14,7×9,7։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *նոտր։* Տող՝ *21։* Կազմ՝ *կաշեպատ տախտակ։* Վիճակ՝ *բավարար։*

ա. *1ա. Քարոզ վասն լեզուի, ի բանն Առակին, որ ասէ. Մահ և կեանք ի ձեռն լեզուի լինի։*

բ. *9ա. Քարոզ վասն մեղաց։ Որպէս ասէ առաքեալ[ն] Յակոբոս՝ ի բանն. Ցանկութեան յղացեալ՝ զմեղս ծնանի և մեղքն կատարեալ՝ զմահ ծնանի։*

գ. *16ա. Քարոզ վասն յիշուց տրտողաց, քուֆր ասողաց, բամբասողաց է։*

դ. *24ա. Երանելւոյն Աթանասի արքեպիսկոպոսի Աղեքսանդրու Հարցմունք վայելուչք և պատասխանիք Կիւրղի եպիսկոպոսի Հայրապետի՝ յաղագս մակացութեան և հանճարոյ։*

ե. 93ա. Պատմութիւն սուրբ առաքինասէր կրօնաւորին և ճգնազգեաց միակեցին Յովսիմովսի, որ խորհեցաւ և զմտաւ էած երթալ յերկիրն երանելեաց:

զ. 114ա. Յանապատ մի գայր ԳՃ (300) ճգնաւոր...

է. 115ա. Պատմութիւն վասն թագաւորի, որ ոչ ունէր որդի և եղև:

ը. 131ա. Պատմութիւն հրաշից Քիլիսու Սուրբ Յովանէս եկեղեցին, որ ականերև տեսին Բ քահանայ և Բ աշխարհայական և փոքր կղերիկոս մի ընդ նոսա, զոր գրեալ է առաջակայս թվին ՌՃՀԸ (1729)-ին, աւուր երկուշաբաթ աւրին է ժամին. Վերագիրն էր Բ, գիր տարուն էր Զ, Զատիկ՝ ապրիլի ԺԳ, որ աւնն Ծռայզատիկ:

131բ Ի մեր Հայոց թվականին
ՌՃ եօթանասնին
Ութն աւելի վերայբերի (1729)
Եւ իմաստնոց իմանալի,
Որ էր ամիս հռոմոց ազգին,
Փետրվարի երկու հնկին (10),
Մէք նատէնաք եկեղեցին,
Եւ օրն էր երկուշաբթի,
Եա կէս աւուր եօթն ժամին
Պահել չիլէ քառատորին
Տէր Մարտիրոս նորընծային,
Տէր Ովաննէս ընկեր սորին,
Եւ այլ երկու այր նատէին,
Հետ ընդ նոսա խօսացէին,
Զարմանալի յիրըս տեսին.
Զախակողմ[ե]ան մեծ խորանին,
132ա Տէրունայկան սուրբ պատկերին,
Պատանայ տեղ ժամանայկին,
Կանթեղ մի կայր առաջ նորին.
Յանկարծակի սոյքայ տեսին
Լուս մի վառէր մէջ կանթեղին:
Երբ զայն տեսին, ատից կացին,
Սակաւ այլ ինչ առաջ գնայցին՝
Երկրպագեալ արտասվեցին
Տրնդրաքրութեամբ աղօթէին,
Մեղաց թողութիւն հայցէին
Եւ օրհնութիւն Տեառն մատուցին:
Եա ըղժամու դուռն բացին,
Ըղլուսարարըն գոչեցին,
Տեսիլ հրաշըն պատմեցին
Թվին ատճկաց ՌՃԷԷ (1728—1729)

ը. 134բ. Բանք Կիրակէի: Պատմութիւն մեծ քաղաքին Հռոմ, որ է յԱրևմուտս...

ԺԵ. 145բ. Վասն գալստեան Նեռին—Առաջին օրն բարձրասցի ծովըն Խ (40) կանգուն...

ԺԱ. 147ա. Վասն դժոխացն.

ԺԲ. 151ա. Վկայութիւնք հակառակացն և պատասխանիք նոցա։

ԺԳ. 162ա. Կարապետ մեծի վարդապետի...

ԺԴ. 165բ. Ամենայնի սկիզբն ես եմ...

ԺԵ. 166ա. Աստուած մարդասէր և տէր ողորմութեան, գիտեմ զի ձանձրանալ...

## Հիշատակարան

### Փիլիպպէ գրչի

91բ. Աստուծով աւարտեցի ես զառաձեալս մեղօք Տէր Փիլիպպէս ի թվին ՌՃԿԱ (1712), մարտի ամսոյն ելըն և ի ապրիլ ամսոյն մուտն ի Քիլիս գիւղաքաղաքի։ Այսքան տետրիկս, որ յաղագս հոգևորական բանի հարցմունս արարեալ մեծի վարդապետաց Աթանասի և Կիւրղի. և սա տեսեալ նորընծա Քիլիսցի Մխիթար քահանայս, ասաց ինձ գրել, և ես ըստ տկար մարմնովս գրեցի և պիտոյս իւր, որ բարով վայելէ և երկարեալ ժամանակաւ ողջութեամբ օգտեսցի. ամէն։

### Գասպար գրչի

130բ. Գրեցաւ ձեռամբ մահտեսի Աբրահամի որդի տրուպ Գասպարգրի, ի մայիս ամսոյ Ի և Զ (26) և թվին Հայոց ՌՃԿ (1711)-ին։ Աւարտեցաւ Հոգւոյ գալս[տ]եան Է (7)-ն, որ շաբաթի Ժ (10)-ն ժամու։

144բ. Որ և ստացող գրոցս և յորժամ կարդայք զպատգամս Աստուծոյ, որ երևեցաւ յերկնից ի Քրիստոսէ Աստուծոյ մերոյ, յիշեցէք ի մաքրափայլ յաղօթս ձեր զստացող սորա և զծնօղս, փոքրիկ կիւղաքաղաքն Քիլիս մահտեսի Աբրահամի որդի Գասպարս և զմայր իմ՝ Մարգարիտն և եղբայր իմ՝ տիրացու Մխիթարն և Կարապետն յիշեցէք, յիշեալ լիցիք առաջի Աստուծոյ ատ ամենայն հաւատացեալսն, և խնդէք ամենեքեան միաբան քահանայք համգերձ ժողովրդեամբք, ասացէք օրհնեալ է Աստուած և անկեալ երկիրպագէք Տեառն Աստուծոյ, որ փչեալ է Թուխտս թվին Հայոց ՌՁ և Ը (1639)-ին, [յ]ուլիս Ի և Դ (24)-ին, օրն Դ-շաբթի, և ի յօրինակէն զսա ի Քիլիս՝ թվին ՌՃԾԴ (1705)-ին. ամէն։

Հայր մեր որ երկինս ասելով՝ յիշեցէք մեղաւոր և անպիտան գծող գրչիս՝ տրուփ Գասպարս և հանգուցեալ վարդապետ իմ՝ զՏէր Մելքոն քահանայն, որ և հանգուցեալ էր ի թվականիս Հայոց ՌՃԾԱ (1702)-ին, օգոստոս ամսոյ մէկ. Աստուած ողորմի ասողացն՝ Աստուածն ամենայնի իւր ողորմի. ամէն։ Հայր։

### Հետագայի

132բ. Սանայ ՌՃՁ (1731—1732) նորընծայ Տէր-Օվաննէս եղայ ի Սուրբ Ակոբ տէրտէրնին։ Կէն հին մեզոք մէզոք ըսկսի քի մէն էք մէզոք։ Միւս տէրտէրնին սաէ. ինքի ի՞նչ կուզըս. անոնք սիրեցին, զիս առեցին։ Ըսի ու-

*ներր իմ Աստուած ի Նիկիա սուրբ ճողովքըն հաւատամբ։ Հոն ասացի և հաստատց Կոստանդնու սուրբ ճողովքըն. Փառք ի բարձուն հոն ասացին, ոչ անիցեցին կայսպաշ[տ]ըն, ոչ ջհուտըն, ոչ մարդըսպանըն, ոչ տաճիկըն, ոչ գողն, ոչ աւազակըն, անիցեցին անհնայզանըքըն ալ ալիքըն.*

*133ա. Հոգուն սրբոյ դէմ կանողըն, տուղ պակաս էնողըն, պակաս հաղրողն, պակասին աւելակ ըլլողըն, գիտնող ու չասողն մի՛ բանես, բան անօրէ՞ր չի գտնաս երկրայվորէն։*

*Դու տանեաւ բօլայլեք միայլի.*
*Տրրին խանեալ կուն օլալ,*
*Ջխախ կիտար՝ վէրան կալալ,*
*Մեղուցեալ մեղայ, Աստուած քաւեայ։*

*131ա. Մի ցանկանար փառարել,*
*Քանիզի փարն է անցաւոր,*
*Այսոր քեզ հիր է,*
*Վաղ իբրև թռչի թէվաոր։*

*Գրեցի այս գիրս* Դաւիթ Տէր Մարտիրոս ///

## 38

## ԽՈՐՀՐԴԱՏԵՏՐ

*(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան։* Arm. MS № 2*)*

ՌճՀԱ—1722

Գրիչ՝ *Եղիա երեց Մարզվանեցի։* Ստացող՝ *Մահտեսի Սիմանի որդի Սահակ։* Թերթ՝ *21։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *20,5×28։* Գրություն՝ *երկսյուն։* Գիր՝ *բոլորգիր։* Տող՝ *22։* Մանրանկարչություն—*խաչկերթյուն՝ 1բ, զարդանկար անվանաթերթ՝ 2ա։ Լուսանցազարդ՝ բուսական, մի քանի հատ։ Զարդագիր՝ թռչնագիր։* Կազմ՝ *կաշեպատ տախտակամբ։* Վիճակ՝ *բավարար։*

Ծնթ. *Կազմի վրա՝ № 1560։*

### Հիշատակարան

### Գրչի

*Փառք... Որ եսուր կարողութիւն ատրաման խորհրդագիրք սուրբ պատարագիս։ Ընդ որս զայս* Մահտեսի Սիմանի *որդի* Սահակս *ցանկացայ զայս ոսկէզարդ խորհրդգիս և ետու ցիշատակ* Պիսկէնու Սուրբ Աննայ *անուամբ կոչեցեալ վանաց* Սուրբ Աստուածածնայ *տաճարին, անդ մնասցէ։ Ո՜վ սրբազան հայրք, աղաչեմ և պաղատեմ առ ոէրութեան ձերոյ, յորժամ պատարագ մատչի, յիշման արժան արարէք զմեղապարտ* Սահակս, *զհայրն իմ և զմայրն*

*իմ և զկենակիցս իմ՝ յիշելով զմաքրափայլ աղօթս ձեր, և դուք վարձս ի Քրիստոսէ առնուցուք, և ձերին սուրբ աղօթիւքն Տէր Աստուածն ամենայնի մեզ մեղաւորացս ողորմեսցի. ամէն։*

*Սա եղաւ ի թվին ՌՃՀԱ (1722) ամին, մարտի Ե (5) օրն։ Ով որ յիշէ, յիշեալ լինի։ Հայր մեր որ։*

*Ձեռամբ մեղապարտ* Մարզվանցու
Տէր Եղիայ *երիցու.*
*Սխալ բանիցս կամ ամօթու,*
*Զձեր ոտացն հող և փոշի,*
*Չեմ արժանի զանունս յիշելու։*

## 39

## *ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏՈՒՄԱՐԻ*

*(Նյու Ջերսի, Պերճ և Արմինե Արազներ և Արտեմիս Տեմիրճյան)*

**ՌՄ—1751**

Գրիչ՝ *Ոհան ընթերցող։* Ստացող՝ *Մահտեսի Աբրահամ։* Թերթ՝ *162։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *11×16,3։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *նոտրգիր։* Տող՝ *18։* Մանրանկարչություն—*ճակատազարդ՝ 2ա, 14ա, 25ա։* Կազմ՝ *Ա փեղկը կաշեպատ տախտակ, դրոշմազարդ, Բ փեղկը՝ չկա։* Վիճակ՝ *բավարար։*

Ծնր. *Ձեռագիրս 1972 թ. փետրվարի 5-ին Թենեֆլայում (Նյու Ջերսի նահանգ) տողերիս գրողի միջոցով Պերճ և Արմինե Արազները նվիրեցին Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10527)։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. *2ա. Պատճէ տումար Հայոց։*
բ. *14ա. Պատճէ տումար Հոռվմայեցոց։*
գ. *26ա. Մեկնութիւն տումարի, զոր խնդրեաց Թումայ վարդապետ Մեծոփայ վանից աստուածարեալ սուրբ ուխտին և սիրով զհայցուածս նորա կատարեալ Յակոբ վարդապետի Ղրիմացո։*
դ. *150ա. Նորին Յակոբ վարդապետի Ղրիմեցոյ Յաղագս տումարական մակացութեան, թէ յորոց մարդկանէ արհեստաւորեցաւ, գիտելի է։*

### Հիշատակարան

### Գրչի

*161բ. Գրեցաւ հանճարով լի գիրքս իմաստասիրական, յայտնիչ երկնի և շարժման երկնային մարմնոց, ընթացից և հոլովմանց լուսաւորացն երկնի, և հաստատութեան երկրի, զորս Տումարի մեկնիչ կոչի, զորս գրեցի ես նուաստ*

ոգի Տէր Կիրակոսի որդի Ոհան ընթերցողս, թւին ՌՄ (1751)-ին, ի վայելումն մահտեսի Յեսայի որդի մահտեսի Աբրահամին, զոր Տէր Քրիստոս բարեաւ վայելումն տացէ. ամէն։

Հետագայի

ա. 13ա (Շղագիր, հայատառ թուրքերեն) ... Թախրայպուրան օղլու վէ Պալը վէ Բարսեղ. վէ Յակոբ (նույնը՝ 162բ)։

բ. 163բ. Այս ձեռագիրս, որ Պերճ և Արմինէ Արագի ու իրենց մօր Արտեմիս Տեմիրճեանի (ծնեալ Թանրապուրունեան) սեփականութիւնն է՝ նուիրած է ս. Մեսրոպ Մաշտոցի Մատենադարանին, Երեւան, ի յիշատակ Թանրապուրունեան գերդաստանի ննջեցեալներուն (Տէրէվանճցի. Կեսարիա)։ Յանձնուած է սր. Բարգէն Զուգասզեանի ի Ն. Ճիրսիյ, Միաց. Նհգ. Փետր. 5, 1972։

40

## ՍԱՂՄՈՍԱՐԱՆ (ՀԱՅԱՏԱՌ ԹՈՒՐՔԵՐԵՆ)

(Նյու Յորք, Գրիգոր Մագսուտյան)

Կոստանդնուպոլիս ՌՄԽԸ—1799

Գրիչ՝ Նահապետ որդի Անդրիասի։ Թերթ՝ 310։ Մեծություն՝ 13×19։ Գրությունը՝ երկսյուն։ Գիր՝ նոտրգիր։ Տող՝ 21։ Մանրանկարչություն—ճակատազարդ՝ 40բ, 75ա, 114բ, 146բ, 184ա, 217ա, 253ա։ Զարդագիր՝ թռչնագիր և հանգուցագիր։ Կազմ՝ ստվարաթուղթ։ Վիճակ՝ լավ։

Ծնթ. Ձեռագիրս 1972 թ. փետրվարի 15-ին Թենեֆլայում (Նյու Ջրրսի նահանգ) տաղերիս գրողի միջոցով Գ. Մագսուտյանը նվիրեց Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10528)։

Հիշատակարան

Գրչի

309ա. Սէնէ ١٢١٤ թէպիլ էվէլին ٢٣ կիւնիւ վէ թարիխի իսավի սէնէ 1799, օգոստոսին 13 կիւնիւ հալիէ Կօսթանթանիէ Աստարճը խանը սաքինլէրինտէ խամի էլհաքիր Նահապետ նամինտէ հավէսիլէ եազմաղէ պաշլատըղըմտէ շարաթ կիւն սահէթ եէտիտէ վէ պիթիրմէսի աէֆալ օլ թարիխտէ սէկտեմբերին 28 վէ ճէմազ իլ-էվէլին ١٠ կիւնիւ չորիշշաբթի աքշամ սահէթ 3-տէ պիթտի։ Ալլահըն քէրէմի օլուրսայ ֆիքրիմիտէ բաանտիայ էթտիրմէր եէկեր եօմ օլուրսայ վէ պիր քրիստոնեայ պուլուպ օքույան պատրիսաք հայրըմըզտան պիր իգին ալըրսամ ինշալլահ բաանտիայըր ֆիքրիմ...

309բ. Մէսքեանի հալա կետա եէրինտէ՝
Աստարճը խանը սաքինլէրինտէ,
Եա րէպ, ալիրմայ սատիրլէրինտէ,
Իթտիրմէ ատավէթ օլ քեմլէրիլէ։

*310ա. Խաքի զէվաաէ* Կոստանդնուպոլիս*,*
*Իսմի էլհաքիր* Նահապետ *համինտէ,*
*Իպնի Թէրզի* Անտիրեասէ *տիքտէ,*
*Ջիքրի խայր օլա աչէմլէրիլէ։*

*Դու քիթապի քի նազաք հաքիր պենտենիզ Ղայսէրի շէհիրինտէն* Թահտապուրուն օղլու Աբրահամ *աղանն չըրաղը, վէ Թէրզի* Անտիրեասըն *օղլու ձիւմլէնին այաք Թիւրապը* Նահապետի *հանգուցեալ* Անտիրեաս*. հաճի* Նահապետեան...

*Քիթապի Թեօհֆէ էլ հաքիր* Նահապետ*:*

Կնքադրոշմ. *310ա (փակագիր) «Նահապետ»։*

41

*ԲԺՇԿԱՐԱՆ*

*(Թենեֆլայ, Նյու Ջըրսի, Պետրոս Նորհատ)*

ԺԸ-ԺԹ—XVIII—XIX

Թերթ՝ *81. չգրված՝ 52ա—58բ, 79բ—81բ։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *13×19։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *նոտրգիր։* Տող՝ *35—40, 23։* Կազմ՝ *թղթյա։* Վինակ՝ *բավարար։*

Մեր. *Չեռագիրս 1972 թ. փետրվարի 15-ին Թենեֆլայում (Նյու Ջըրսի նահանգ) տողերիս գրողի միջոցով Պետրոս Նորհատը նվիրեց Մաշտոցի անվան Մատենադարանին (№ 10529)։*

ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

ա. *1ա—51բ. Հազա քիթապ բուվէյէթ մուալիճէթ Պուգրատ հագիրէթլարնին (Բժշկարան Հիպոկրատի)։*

բ. *59ա—79ա. Մազալէհի էվէլ պէնի ատէմին պէտէնի էհվալինքողէտիր (Մարդակազմություն)։*

42

*ՏԱՂԱՐԱՆ*

*(Վաշինգտոն, Կոնգրեսի գրադարան,* Arm. MS *№ 6)*

ԺԹ—XIX

Թերթ՝ *32։* Նյութ՝ *թուղթ։* Մեծություն՝ *19×26։* Գրություն՝ *միասյուն։* Գիր՝ *շղագիր։* Տող՝ *26։* Կազմ՝ *թղթակազմ։* Վինակ՝ *բավարար. կազմը՝ պատռված։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

**Հայատառ և արաբատառ թուրքերեն տաղեր հանդիպակաց էջերով.**

*1ա.* تاريخ حضرت پرتو افندى *(չիք հայատառ էջը)*

*1բ. Կիւֆթէի Հաշմէթ. 2ա.* كفتى حشمت

*1բ. Թարիխի Էսյատ Էֆէնտի. 2ա* تاريخ اسعد افندى *և այլն:*